1916 № 37.—Սեպտեմբերի 11

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ՝** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութիւնների համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.։ Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտաշարդեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Փոստ. հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների մասին խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ՆՈՐ ԴՊՐՈՑՆԵՐԻ ԱՌԹԻՒ

Մեծ պատերազմի ամենածանր արհաւիրքը վիճակուեց տաճկահայերին։

Հարուածը հսկայական էր, զոհերը անթիւ, անտեսական քայքայումը անսահման։

Այս բոլորի հետ բնականաբար խորտակուեց և մտաւոր ու կուլտուրական կեանքը։

Պատերազմի հայ զոհերի ստուար մասը—մի քանի հարիւր հազար հոգի—գաղթեցին մեր երկիրը, կորցնելով երկրում ամեն ինչ։

Գաղթողների առաջին և աղաղակող կարիքները սնունդ, հագուստ, բնակարան և բժշկութիւն էին։

Այդ կարիքներին բաւարարութիւն տալու համար արձագանգ տուին թէ Ռուսաստանի ու միւս երկրների հայութիւնը և թէ մեր կառավարութիւնը։

Ամեն կողմից շտապեցին գաղթականներին հասցնել սնունդ, շոր, բժշկական օգնութիւն և տեղաւորել գիւղերում ու քաղաքներում։

Առաջին տարին հոգատարութիւնը գրկուածների մասին ամբողջովին սահմանափակուեց նրանց նիւթական խնդիրներով։

Նախ հարկաւոր էր ամոքել նրանց ֆիզիքական տանջանքները։

Երկրորդ տարին, երբ նիւթականը որոշ չափով կանոնաւորուեց և դրութիւնը դարձաւ տանելի, թէև մնում են դեռ խոշոր պակասներ, զգացուեց գաղթականների մտաւոր և բարոյական կարիքը։

Այս տարուայ միօրեայ անուանական ցուցագրութիւնը, որը կատարեց Հայկ. Կենտր. Կոմիտէն փետրուար ամսին կառավարութեան յանձնարարութեամբ, ցոյց տուեց, որ Անդրկովկասում տեղաւորուած գաղթականների մէջ 48,000 հոգի դպրոցական հասակի երեխայ կայ։

Չգնալ ընդառաջ այդ կարիքին, լռել անկարելի էր։

Եւ ահա՝ հայոց հասարակութիւնները իրենց սահմանափակ միջոցներով սկսեցին դպրոցներ բաց անել գաղթականների երեխաների համար։

Հայկ. Կենտր. Կոմիտէին յաջողուեց բանալ 84 դպրոց 3740 երեխայի համար Թիֆլիսի, Գանձակի, Երևանի և Կարսի նահանգների զանազան վայրերում։

Սակայն կատարուածը շատ սակաւ էր. իսկ ուսման ծարաւն՝ աւելի մեծ։

Հարկաւոր էր հզօր և հաստատ աղբիւր նիւթական

միջոցների՝ թէ կանոնաւոր դպրոցներ պահելու և թէ աւելի մեծ թւով երեխաներ ընդունելու համար։

Այդ տեսակ միջոցներ կարող էր տալ միայն պետութիւնը։

Այսօր մենք ուրախութեամբ կարող ենք արձանագրել, որ մեր այդ փափագը կատարուեց։

Պատերազմից վնասուածներին օգնող Մեծ Իշխանուհի Տատեանա Նիկոլաեւնայի հովանաւորութեան տակ գտնուող Կոմիտէն, որը ստանում է միջոցներ պետական գանձարանից, յարգելով Պետական Դումայի պատգամաւոր պ. Մ. Պապաջանեանի խնդիրը, որը հիմնուած է եղել Հայկական Կենտրոնական Կոմիտէի զեկուցման վրայ, որոշել է տալ այս սեպտեմբերից 9,000 հայ գաղթական երեխաների դպրոցական ծախքերը։

Նոյն Կոմիտէն որոշել է, եթէ հարկաւոր լինի, աւելացնել իր նշանակած գումարը մինչև 14,000 երեխայի համար։

Կոմիտէի այս որոշումն արժանի է առանձին ուշադրութեան։

Այժմ մեզ հնարաւորութիւն է տրւում հազարաւոր գաղթական մանուկների համար բաց անել դպրոցներ, ուսում տալ և կրթել նրանց, որ ապագայում կազմեն գիտակից տարր և լինեն օգտաւէտ անդամ իրենց ժողովուրդի ու երկրի համար։

Նիւթական միջոցները տալիս է Մեծ Իշխանուհու Կոմիտէն, բայց գործի նախաձեռնութիւնը, կազմակերպումն ու վարումն թողնում է հայոց այն ընկերութիւններին, որոնք զբաղւում են գաղթականական գործերով։

Որքան պատուաբեր, նոյնքան և պատասխանատու գործ է յանձնւում այդ ընկերութիւններին։

Չպէտք է խնայել ոչ ոյժ, ոչ աշխատանք, որպէսզի արդարանան ժողովուրդի յոյսերը և օժանդակող Կոմիտէի սպասելիքը։

Ուստի մենք կոչ ենք անում մեր հայ կազմակերպութիւններին, մասնաւորապէս Կ. Հ. Բարեգործական Ընկերութեան բազմաթիւ ճիւղերին, լիազօրներին, որ անյապաղ նախաձեռնեն գաղթականական վայրերում բաց անելու դպրոցներ։

Կոչ ենք անում գաղթական ուսուցիչներին և նրանց նորակազմ ուսուցչական միութիւններին, որ իրենց բոլոր մտաւոր և հոգեկան ոյժերով նուիրուեն գաղթական երեխաների համար բացուելիք դպրոցներին, եթէ նրանց կողմից երբեմն հարկաւոր լինի նոյն իսկ նիւթական զոհողութիւն։

Այդ է պահանջում մեր ժողովուրդի շահը։

Այդ է պահանջում անկեղծ սէրը դէպի նրա մատաղահաս սերունդը, որ ստանալով առողջ կրթութիւն և ուսում, կազմելու է նրա գոյութեան հիմքն ու յոյսը։

Պէտք է շտապել։

Մ. Ց.

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատ։ Սվազից և Անգորայից օգնական զօրքեր ստանալով թիւրքերը նորից յարձակումներ են սկսել համարեա ամբողջ ճակատի երկարութեամբ, բացի հիւսիսային գծերից, ուր սառնամանիքներն ու արշինաչափ ձիւնը արգելք են հանդիսանում պատերազմական գործողութիւններին։ Բէլքիթից արևմուտք, Քղիից հարաւ-արևմուտք, Մուշից հարաւ-արևմուտք և Բաղէշի շրջանում ամենուրեք թիւրքերը առաջխաղացութեան փորձեր են անում։ Բացի վերջին վայրից, ուր ռուսները հակայարձակման դիմելով գրաւել են Ջխուր-Նորաշէն գիւղը, միւս գծերում նրանք բաւականանում են յարձակումներն առայժմ յետ մղելով։ Կռիւներն այս գծերի վրայ, ինչպէս երևում է, բաւական արիւնահեղ են, որովհետև երկու կողմն էլ յամառ կերպով հետապնդում են իրենց ռազմական ծրագրները։

Պարսկական ճակատում թիւրքերը աչքի ընկնող կենդանութիւն են ցոյց տալիս Մոսուլի շրջանում, ուր նրանց նորից յաջողուել է թարմ զօրք կենտրոնացնել։ Րայաթից արևմուտք նրանք կատաղի յարձակումներով աշխատում են ռուսներին դուրս մղել իրենց դիրքերից, բայց յաջողութիւն չեն ունենում։ Համադան-Քիրմանշահի շրջանում, ինչպէս երևում է, թիւրքերի գործերը յաջող չեն գնում։ Յամառ լուրեր են պտտում, որ նրանք դատարկում են արդէն Համադանը։

Միջագետքի ճակատից այս շաբաթ մի հաղորդագրութիւն է ստացուած, որից երևում է, որ Եփրատի վրայ ամիսներից ի վեր տիրող հանգիստը սկսում է խանգարուել։ Օգոստոսի կէսերին անգլիացիք մի կռիւ են ունեցել թիւրքերի հետ, որի ժամանակ գրաւել են նրանց դիրքերը, մօտ 200 հոգի կոտորել և ահագին աւար վերցրել։ Ինչպէս երևում է, անգլիացիները վերջ ի վերջոյ ստիպուել են հապճեպ նահանջ տալ այդ նոր դիրքերից, որովհետև, ինչպէս պաշտօնական հաղորդագրութեան մէջ է ասուած, նրանք ոչնչացրել են պատերազմի աւարի մեծ մասը։

## ԱՒՍՏՐՈ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատից այս շաբաթ ստացուած հաղորդագրութիւնների մեծ մասը «էական ոչինչ չկայ» խօսքերից էր բաղկացած։ Բայց և այնպէս մի քանի արիւնահեղ կռիւներ են տեղի ունեցել 1) Զալատայա Լիպայի աջ ափին, ուր ռուսները գերել են 537 թիւրք ասկեար 14 սպայի հետ միասին, 2) Գալիչի շրջանում, ուր նրանք գերել են 3174 գերմանացի զինուոր և 34 սպայ, 3) Կովել-Ռովնօ գծի վրայ, ուր գերմանացիների կատաղի յարձակումները յետ են մղուած, 4) Սվինիւխի մօտ, ուր թշնամին գերի է տուել 687 հոգի և Կարպատներում, ուր չնայած ձիւնին ու մառախուղներին ռուսները դուրս են մղել աւստրիացիներին իրենց դիրքերից, գերելով նրանցից 437 զինուոր և մի սպայ։ Այսպիսով ռուսական ճակատում շարունակուող «հանգստի» օրերին էլ թշնամիները մի քանի վայրում լուրջ ջարդ են կրել գերի տալով մօտ 4800 զինուոր և 50 սպայ։

Ֆրանսական ճակատում, չնայած գերմանացիների կատաղի հակայարձակումներին՝ ֆրանսացիք, թէև դանդաղ, բայց հաստատակամօրէն առաջ են շարժւում։ Նրանք այս շաբաթ 10 կիլոմետրաչափ գծի վրայ մօտ 3 կիլոմետր խորութեամբ առաջ են անցել Սոմից հիւսիս և վերջնականապէս գրաւել Պերոնի ճանապարհին գտնուող Բուշավեն գիւղը։ Սոմից հարաւ էլ թշնամին 10 կիլոմետրանոց գծի վրայ յետ է շպրտուած իր առաջին գծերից։ Այստեղ նրանք գրաւել են Վերմանդովիլլեր և Դենիկուր գիւղերը։ Վերդէնի տակ ներկայումս սովորական թնդանօթա-

մարտ տեղի ունի Վօ-Տապիտր գծի վրայ։ Այս շաբաթուայ ընթացքում ֆրանսացիներից վերցրած գերիների թիւը անցնում է 4000-ից. բացի սրանից՝ նրանք գրաւել են 40 թնդանօթ և 50 գնդացիր։

Անգլիական ճակատում ևս այս շաբաթ թշնամին մի շարք պարտութիւններ է կրել Գենշելի, Ֆլերիի Կուրսելետտի և Մարտէնպյուիշի շրջանում. այս բոլոր վայրերում էլ անգլիացիք առաջ են շարժուել գերելով թշնամիներ և խլելով աւար։ Առանձնապէս նշանակալից է Տիէպվալի շրջանում տեղի ունեցած առաջխաղացութիւնը, որի ժամանակ դաշնակիցները խլել են առատ քանակութեամբ աւար։ Այս շաբաթուայ կռիւների ընթացքում անգլիացիք ձեռք են գցել գերմանական գլխաւոր շտաբի նախկին կառավարիչ գեներալ Ֆալկէնհայմի օգոստ. 11 թուակիր մի հրամանը, որից երևում է, որ թշնամու թնդանօթների և ռումբերի սպառումը աւելի մեծ չափով է կատարւում, քան թէ արտադրութիւնը։ Եթէ այսպէս շարունակուի, ասուած է հրամանի մէջ, «մենք անկարող կլինենք լրացնել մեր կորուստները կամ նոր զօրամասեր կազմել»։

Իտալական ճակատում իտալացիների առաջխաղացութիւնը դանդաղօրէն շարունակւում է Տրենտինոյի և Կարսոյի շրջանում։ Այս շաբաթ նրանք գրաւել են թշնամուց մի քանի ամուր դիրքեր, գերել 425 զինուոր 3 սպայով և խլել 3 թնդանօթ ու մի քանի գնդացիր։

Ռումանական ճակատում կռիւները հիւսիսային և հիւսիս-արևմտեան գծերի վրայ շարունակւում են։ Վերջին օրերս ռումանները հիւսիսային գծի վրայ յետ են նահանջել Գեօրգիէնի քաղաքը և այնտեղ ամրացել։

### ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Սալոնիկի ճակատ։ Սերբական գծի վրայ այս շաբաթ խիստ արիւնահեղ կռիւներ տեղի ունեցան։ Օստրովօ լճի մօտ սերբերը սարսափելի ջարդ տուին բուլղարներին՝ խլելով նրանցից մօտ 32 թնդանօթ և բազմաթիւ գերիներ. սրանց վիճակն անյոյս է։ Թշնամին նահանջում է դէպի Մոնաստիր։ Վերջին օրերս խիստ յամառ կռիւներից յետոյ սերբերը յետ են մղել բուլղարներին ուղղակի անմատչելի դիրքերից և մտել Կայմակչալան, որ սերբական պետութեան սահմաններում է գտնւում արդէն։ Սերբական գծի վրայ ռուս-ֆրանսական զօրքերը յամառ կռուից յետոյ գրաւել են Ֆլօրինան։ Միւս գծերի վրայ նշանակալից նորութիւններ չեն ստացուած։

Դոբրուջայի ճակատում յամառ կռիւները շարունակւում են։ Ռուս-ռումանական միացեալ բանակը ամրանալով նոյն դիրքերի վրայ, որոնց տեղը չի յիշատակւում, յետ են մղում թշնամու գրոհները։

⁂

# Ներքին տեսութիւն

## ԳԵՐԱՊԱՏԻՒ ՄԵՍՐՈՊ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՌԱՋՆՈՐԴԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

Մեսրոպ եպիսկոպոս Իմերէթի և Վրաստանի թեմի առաջնորդութիւն ստանձնելուց յետոյ հազիւ անցել էր մի քանի ամիս, որ շրջեց համարեա ամբողջ թեմը, քաղաքներ և գիւղեր։

Ձեռնարկեց վերանորոգելու Հաղպատի, Սանահնի, Հաղարծինի և Մխիթար Գոշի վանքերը խորհրդակցութեամբ հայ և օտար ճարտարապետների և տեղն ու տեղը զննելով առաջին երկու վանքերը։ Այդ նպատակով հանգանակութիւն էլ սկսեց. և իշխան Բորիս Արղութեանը յանձն առաւ Սանահնի վերանորոգութեան բոլոր ծախքը։

Ապա ի նկատի ունենալով որ իր այցելած քաղաքներում, բացի Քութայիսից, գոյութիւն չունին դպրոցական յարմարաւոր շինութիւններ, մասնագէտ ճարտարապետների խորհրդակցութեամբ պատրաստել տուեց դպրոցական նորագոյն յատակագիծ, որով նոր դպրոցները պիտի շինուէին։ Մի այդպիսի դպրոց, մի անյայտ բարերարի նուէրով շինել տուեց Մեսրոպ եպիսկոպոսը իր հայրենի Գորիս քաղաքում։ Սուլտա գիւղի դպրոցի շէնքը արդէն պատրաստ է, Գորուայ շինութիւնը հիմնովին վերանորոգել տուեց Կ. Ալիխանեանի օժանդակութեամբ։

Երկար տարիներ շարունակող Վերայի գերեզմանատան եկեղեցին իր անմիջական հսկողութեամբ սկսուած վերանորոգութիւնը աւարտեց. Ուպրավայից Նախալովկայում տեղ ստացաւ հայոց եկեղեցու համար։ Քաղաքումս Հաւլաբարի Շաւի թաղ կոչուած թաղամասում հայոց հին գերեզմանատունը, մօտ 10,000 քառ. սաժէն հողը, իր տիրապետութեան տակ առաւ, ցանկապատելով և պահպանութեան համար հոգալով։ Այդ հողը, որ ենթարկուած էր յափշտակութեան, տասնեակ հազարներ արժէ։

Դիմելով նահանգական իշխանութեան, կարողացաւ առաջն առնել տիկին Նազիրեանի կտակած մեծարժէք կալուածքների ժառանգորդների իւրացման և որ գլխաւորն է՝ այսու հնարաւոր դարձաւ Ներսիսեան Դպրոցին կից 400-ից աւելի դեսեատին հողը աճուրդով գնել դպրանոցի համար։

Մ. եպիսկոպոսը խրատելով և սաստելով քահանաների և երէցփոխների և անպատշաճ կացութիւններին, որ շատ անգամ ժամուցի նիւթ էին դառնում, վերջ տուաւ։

Անձամբ և միշտ յաճախելով Կոնսիստորիայի նիստերին և ամեն օր ընդունելով խնդրատուներին, արագ ընթացք էր տալիս գործերին և խնդիրքներին։ Նրա ժամանակ վերջացան Կոնսիստորիայի դէմ շատ սովորական դանգատներն ու դժգոհութիւնները։ Կոնսիստորիայի դրամարկղը դատարկ գտաւ և հեռանում է խոշոր գումար թողնելով իր յաջորդին. երբէք չծանրացաւ եկեղեցիների աղքատ եկամուտների վրայ առաջնորդական և այլ ծախքերի համար։

Պաշտօնավարութեան սկզբներում կանոնաւոր կերպով յաճախում էր Պետական և Ազգային դպրոցները, դասերին և քննութիւնների ժամանակ, յաճախում էր եկեղեցիները։

Վրայ հասաւ աղէտաբեր պատերազմը. նա դարձաւ Ազգային Բիւրոյի և Կենտրոնական Կոմիտէի պատուաւոր՝ և վերջը Ազգային կազմակերպութեանց նախագահ։ Սկսուեց գաղթը և որբերի պահպանութեան անհրաժեշտ պահանջը, և Մեսրոպ սրբազանը նուիրուեց այդ գործին իր բոլոր եռանդով և մոռացուեցան կամ աւելի ճիշտ յետաձգուեցան նախնական ծրագրերը։

Պէտք է շեշտել սակայն, որ նա իր նախորդներից ստացել էր 99 դպրոց, բայց ինքը կարճ ժամանակում հասցրեց 145-ի, մի թիւ, որ գնալով պիտի բնականաբար աճէր, սակայն պատերազմը եկաւ ամեն ինչ խանգարելու։

Նրա դռները միշտ և օրուայ բոլոր ժամերին բաց են եղել բոլոր դիմողների առաջ։ Ոչ մի երեկոյ առանց ժողովի չի անցրել։

Յովնանեան և Գայիանեան օրիորդաց դպրոցները այժմ ունին միջնակարգ դպրոցի լրիւ դասընթաց, 7 և 8 դասարաններով և շնորհիւ նրա նիւթական և բարոյական աջակցութեան։ Ցանկանալով ունենալ այդպիսի դպրոցներ նաև Հաւլաբարի շրջանում, նա Սուրբ Կարապետ եկեղեցու բակում ծրագրեց շինել տալ դպրոցական նոր մեծ և յարմարաւոր շէնք, ստացաւ մի կտոր գետին պ. Մանուէլեանից, և ապահովելով շինութեան գործը պ. Մ. Բալանթարեանի աջակցութեամբ և տուեց պատրաստել յատակագիծը։ Ցանկանալով արդիւնաւէտ կացուցանել դպրոցական գործը, քաղաքիս մէկից մինչև երեք բաժանմունք ունեցող դպրոցները միացրեց իրար հետ. Սուրբ Սարգսինը Կաթուղիկէինի հետ, Էջ-

միաձնեցւոցը Սուրբ Մինասինի հետ, շինութիւնը վերջացնելուց յետոյ պայմանաւորուել էր միացնելու Սուրբ Կարապետինի հետ Թամոյեանցը, որոնցից առաջին երկուսը արդէն ունին չորս և հինգ բաժանմունքներ և ի վիճակի են աշակերտների պատրաստութեան հետ աւելի ընդարձակուելու, իսկ Թամոյեանցը իր նիւթականի շնորհիւ դառնալու էր միջնակարգ։

Տեսնելով որ Թեմի դպրոցները մի Թեմական տեսչով կառավարուել չեն կարող և բ. տեսուչ դժուար էր պահել, կազմեց իր մօտ դպրոցական մի խորհուրդ գործին գիտակ և հմուտ անձերից։

Անշուշտ գերապատիւ Մեսրոպ եպիսկոպոսը իւր պատրաստութեամբ կարող էր շատ աւելի բան անել, Թերևս շատերի դժգոհութեանց պատճառը հենց այդ է, բայց որ իրօք ժամանակը կարճ և համաշխարհային այս պատերազմից ծագած ազգային անակնկալ աղէտը շատ շատերի բարի ծրագրեր յետ մղեց, այդ ամենքն էլ գիտեն։

Ողջերթ մաղթելով գերապատիւ Մեսրոպ Սրբազանին, յոյս ունինք և վստահ ենք, որ նա իւր նոր վիճակում աւելի արդիւնաւէտ գործունէութիւն կունենայ։

# ՄԻ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՑԱՒ

Մեր դպրոցները—մեծը Թէ փոքրը—ունեն որոշ Թերութիւններ, որոնք յամենայն դէպս կարող էին չլինել։ Այդ Թերութիւնների պատճառով է, որ մեր դպրոցները որոշ տիպ, ոգի, ուղղութիւն չունեն։ Հանրամարդկայինն ու ազգայինը, կրօնական-հոգևորն ու ժողովրդական-աշխարհիկը «համադրւում» ու հակադրւում են այնտեղ ցաւագին հակասութիւններով։

Այդ Թերութիւնները աւելի աչքի են զարնում մեր միջնակարգ աղջկերանց դպրոցներում։ Չգիտէք, ինչպիսի դպրոցներ են սրանք—պետակա՞ն, ազգայի՞ն՝ Թէ հանրամարդկայի՞ն։ Չկայ որոշ ոգի, չկայ տիրապետող լեզու։ Պարզ է, որ չկայ նաև որոշ կրթութիւն։ Տարիներ շարունակ մարդիկ սովորում են այստեղ, բայց որոշ կրթութիւն-զարգացում չեն ստանում։ Եւ կեանք են դուրս գալիս Թոթով լեզուով ու երեք և կէս գաղափարով։

Մի կողմ Թողած միւս, Թերևս գլխաւորապէս «անկախ պատճառներից» առաջ եկած Թերութիւնները՝ պէտք է շեշտել առանձնապէս մէկը—տիրող՝ դպրոցական լեզուի բացակայութիւնը։ Աշխարհիս երեսին չկայ մի կանոնաւոր դպրոց—և չի էլ կարող լինել,—որ տիրող լեզու չունենայ։ Մի լեզու, որով աւանդւում են առարկաների մեծ մասը։ Առանց այսպիսի տիրող, մայրենի կամ գլխաւոր լեզուի ուսումն հնարաւոր չէ։ Մի որևէ լեզու պէտք է գերիշխէ դպրոցում, որպէսզի մանուկները կանոնաւոր մտածել ու արտայայտել սովորեն։ Առանձնապէս բնագիտական և մաթեմատիքական առարկաները պէտք է «մայրենի» լեզուով աւանդուեն։

Բաւական չէ միայն մայրենի լեզուին շատ դասեր—ժամեր յատկացնել։ Մայրենի լեզու—մանաւանդ խորթ օտար միջավայրում—սովորեցնում են, պէտք է սովորեցնեն և միւս առարկաները։ Սրանք էլ պէտք է ճիշտ մտածել ու մտածածը ճիշտ արտայայտել սովորեցնեն։ Պէտք է բառի ու գաղափարի, խօսքի ու մտքի մէջ կատարեալ ներդաշնակութիւն ու համապատասխանութիւն ստեղծել։ Խօսքի և մտքի համապատասխանութիւնը, ճիշտ նկատում է Լայ, դիդակտիկայի ամենաբարդ խնդիրներից մէկն է, որի վրայ այնքան քիչ ուշադրութիւն են դարձնում։

Իսկ մեր դպրոցներում այդ ուղղակի մշտական — խրոնիկ ցաւ ու չարիք է։ Մեր դպրոցականների հոգեկան-իմացական անկարողութեան ու ամլութեան գլխաւոր պատճառը տիրապետող լեզուի բացակայութեամբ առաջ եկած մտքի ու խօսքի անհամապատասխանութիւնն է։

Կոնկրէտ և ստոյգ մտածողութեան ու արտայայտութեան վարժեցնող առարկաները—իրագիտութիւն, բնագիտութիւն և մաթեմաթիքա—մեծ մասամբ մաքուր, կանոնաւոր մայրենի լեզուով չեն աւանդւում։ Այդ առարկաները հայոց լեզուով աւանդողները հայերէն չը գիտեն։

Այսինքն նրանք չեն կարող գիտած կամ զնած իրը ճիշտ անուանել և գաղափարը որոշել։ Գաղափարը կամ միտքը որոշ լինել և ճիշտ արտայայտուել չեն կարող, եթէ գաղափարը չի ստացուել իրի և անուան (բառի) կոնկրէտ միացումից։

Այդպիսով միայն մտաւոր քաօս կարելի է ստեղծել։ Զարգացածը տալ չի կարելի։ Այն «ընտանեկան» կամ գաւառական հայերէնը, որով ուսուցանում են մեր վարժարանաւարտ (գիմնազիա) կամ համալսարանաւարտ ուսուցիչները, շատ և շատ անբաւարար է՝ պարզ ու յստակ գաղափարներ և որոշ մտաւոր պաշար տալու համար։ Աւանդած լեզուին չը տիրապետելը դիդակտիկական գերագոյն յանցանք է. այդ անքաւելիօրէն մեղանչումն է դիդակտիկայի առաջին և գերագոյն՝ հոգեբանական-իրագնական սկզբունքի դէմ։

Այդպիսով միայն ամենալաւ դէպքում էլ ոչ Թէ գաղափարների որոշութեան, այլ ուղղակի անորոշութեան նպաստել կարելի է։ Այդպիսով միայն կարելի է ստեղծել այն մտաւոր քաօսը, այն հոգեկան անկարողութիւնն ու ամլութիւնը, որ անբուժելի ցաւ ու չարիք է դարձել մեր ծխական և միջնակարգ օրիորդաց դպրոցներում։

Ինչպէս էլ որ լինի, որևէ դպրոցում որևէ լեզուով որևէ առարկայ ուսուցանողը պէտք է տիրապետի այդ լեզուին։ Իսկ եթէ մի դպրոցում յանկարծ յիշեալ գլխաւոր «իրագնական» մտքի ու խօսքի որոշութեանը նպաստող առարկաները աւանդւում են «լեզուն չիմանալով» այդ մի ճակատագրական սխալ է դպրոցի համար։ Այդպիսի դպրոցը միայն Թերուս և Թերմիտ, հոգեպէս աղքատ, լեզուով տկար ու անճարակ անհատներ տալ կարող է։ Որովհետև բաւական չէ միայն իմանալը, պէտք է կարողանալ իմացածը նաև արտայայտել։ Արտայայտելով են միայն գաղափարները հասարակական-գործնական արժէք ստանում։

Այս ցաւի միակ միջոցն է՝ մեր դպրոցներում հայոց լեզուով դասաւանդել ցանկացող ոչ-հայ դպրոցաւարտներից հայերէնի ցենզ պահանջել—անտարակոյս մեր Թեմական դպրոցների Դ. դասարանի ծրագրով։

Փրկութեան ուրիշ ճանապարհ չկայ։ Պահանջը մեծ չէ և այդ հնարաւոր է իրականացնել։*)

Վ. Խորէնի

*) Մեր յարգելի աշխատակցի այս դիտողութիւնը, փորձով կարող ենք պնդել, ոչ միայն աղջկանց, այլ և տղայոց միջնակարգ, ինչպէս և քաղաքային որոշ տիպի դպրոցների ևս կարող են վերաբերել. գուցէ Թէ նման երևոյթ դժբախտաբար տեղի են ունենում նոյն իսկ մեր ծխական-եկեղեցական դպրոցներում։

Այս չարիքի առաջն առնելու համար կարելի էր Թերևս գոհանալ նաև գէԹ առժամանակ, եթէ ոչ ընդմիշտ, սահմանելով օտար դպրոցաւարտների համար հայագիտական առարկաների քննութիւն։

Միայն Թէ այսպիսի ծանր պայմաններ դնելով մենք պէտք է գէԹ նիւթական ապահովութեան երաշխաւորել կարողանանք այդպիսի ոյժեր դէպի մեր դպրոցները գրաւելու համար. այլապէս այդ կը մնայ մի pia desiderata—մի բարի ցանկութիւն։ Սակայն պիտի կարողանանք այդ երբևիցէ մեր դպրոցական այս խառնաշփոթութեան միջոցին իրագործել, երբ ոչ պակաս տխրալի Թերութիւններ տարիներ շարունակ փոխանակ վերանալու, աւելի ես արմատանում են։ Շատ ուրախ կը լինէինք, որ Մայր Աթոռի «Ուսումնական» կոչուած մարմինը սակաւ ինչ ես այս Թերութիւնները վերացնելու մասին խորհէր ու գործէր։

Խմբագր.

## Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԻՒՐ ԴՊՐՈՑՆԵՐԻՆ ՈՒՂԱՐԿԱԾ ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆԻ ԱՌԹԻՒ

Բարեգործական Ընկերութեան Խորհուրդը մօտ օրերս ուղարկել է իւր ճիւղերի վարչութիւններին իւր նպաստով պահուող դպրոցների համար մի շրջաբերական (տպագրուած է «Համբաւաբերի» № 33-ում), ուր յայտնելով նրանց արուած յաւելումները, միաժամանակ յանձնարարում է, որ դպրոցների հոգաբարձութեանց հետ աշխատեն աւելացնել ուսուցիչների ռոճիկները, հասցնելով այն ոչ պակաս քան 450—500 ռուբլու յարմարութիւններով հանդերձ [1]) և առաջարկում է, որ դպրոցներում գործադրուին ընդունուած դասագրքեր, ուսուցիչները լինեն դպրոցաւարտներ և այլն։

Կարծում եմ, մի այդպիսի պարզ շրջաբերականի դէմ ոչ մի բան չի կարելի առարկել, սակայն, ինչպէս երևում է, կան մարդիկ, նոյն իսկ հիմնարկութիւն, որոնք չեն հասկացել շրջաբերականի իմաստը և յարձակւում են Խորհրդի վրայ։ Զարմանալու ոչինչ չկայ, եթէ այդպիսիները լինեն անհատներ, բայց երբ այդ տեղի է ունենում այնպիսի հիմնարկութիւնից, որի անդամները ի պաշտօնէ հրաւիրուած են մութ գրութիւնները պարզելու և հասկացնելու, այդ ցաւալի է։

Խորհուրդը ստացել է «Կովկասի Հայոց դպրոցների ուսուցիչների և վարժուհիների Միութեան» Երևանի ճիւղի վարչութիւնից վերոյիշեալ շրջաբերականի առթիւ մի գրութիւն, ուր նրանք յայտնում են, որ—Խորհուրդը իրաւունք չունէր [2]) այդպիսի շրջաբերական ուղարկելու դպրոցներին և ապա, շրջաբերականը անմտածածին յայտարարելով, ասում են, որ—այսպիսի աննորմալ պայմաններում չի կարելի շրջաբերականով յայտարարել, որ հոգաբարձութիւնները 450—500 ռ. ռոճիկով ուսուցիչ հրաւիրեն, վերջում—ցաւ են յայտնում Խորհրդին այդ շրջաբերականի առթիւ և յոյս տածում, որ Խորհուրդը շուտով կուղղի իւր սխալը, որ տգէտ հոգաբարձութիւնները չօգտուեն այդ շրջաբերականից, քանի որ գրասենեակի ամենայետին ծառայողները 500 ռուբլուց աւելի են ստանում։

Խորհուրդը, ինչպէս պէտք էր սպասել, գրութեան ոճը, որ պատիւ չի բերում այդպիսի հիմնարկութեան, և նրա անհիմն լինելը ի նկատի առնելով, որոշել է թողնել այդ գրութիւնը անհետևանք։ Սակայն մենք աւելորդ չենք համարում մեր կողմից վարչութեանը պարզելու մի քանի կէտեր։

Նախ՝ մեթէ Խորհուրդը իրաւունք չունի ցուցմունքներ և որոշ պահանջներ անելու այն դպրոցներից, որոնց ինքը նպաստում է, և չթողնի, որ ըստ ձեր ասման, տգէտ հոգաբարձութիւնները ի չարը գործադրեն այն նպաստը և դպրոցում դասաւանդութիւնը կատարեն Տէր-Թոդիկեան դասագրքերով և ուսուցիչներով. երկրորդ՝ ինչի՞ց է երևում, որ նա առաջարկում է 450—500 ռուբլու. չէ՞ որ նա ասում է ոչ պակաս, ուրեմն եթէ դպրոցը կարող է, թող տայ և 1,000 ռ., կարծում ենք շրջաբերականում հակառակը չի ասուած. իսկ եթէ դուք կամենում էք, որ Խորհուրդը առաջարկէր՝ հրաւիրել ուսուցիչներ ոչ պակաս քան 1000—1500 ռ., այդ դէպքում նա պէտք է ցոյց տար և աղբիւրը, որպիսին դժբախտաբար, որքան մենք գիտենք, Խորհրդին յայտնի չի։ Թերևս վարչութիւնդ գիտէ, թող ցոյց տայ և կարծում եմ, Խորհուրդը մեծ շնորհակալութեամբ կընդունի։

Ուսուցիչների նիւթականի հարցը միայն Ուսուցչական Միութեան Երևանի ճիւղի Վարչութեանը չի զբաղեցնում, այլ շատ շատերին. շատ բարի ցանկութիւններ և առաջարկութիւններ են եղել, սակայն բոլորն էլ առ այժմ մնում են անիրագործելի։ Խորհուրդը չէր կամենում որ իւր շրջաբերականն էլ մնար այդպէս, այդ գրուած է գործադրելու համար։

Ց. Շ.

[1]) Այսպիսի ցանկութիւն յայտնուել է նաև Վեհափառի պատուէրի համաձայն, Թիֆլիս Սրբազան Առաջնորդի կողմից հրաւիրուած յանձնաժողովում, որին ներկայ էին Երևանի փոխ-Թեմակալը, Թեմական տեսուչներ, Ուս. Միութ. անդամներ և այլ կուլտուրական հիմնարկութեանց ներկայացուցիչներ.

Ց. Շ.

[2]) Ընդգծումները իմն են։

## ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԳՈՐԾԵՐ

Պարսկահայ գաղթականութեան հոսանքը սկսել է նուազել։ Այն շրջանները, որոնք ենթակայ էին վտանգի, թիւրքական և զանազան աւազակային յարձակումների, պարպուել են արդէն հայ բնակչութիւնից, որոնք դիմել են դէպի Ռաշտ և Էնզելի։ Ցոյց տրուած եռանդուն միջոցների շնորհիւ Ղարադաղի և Սուլթանաբադի շրջանների հայ գիւղացութեան գաղթի առաջն առնուել է։ Իսկ գաղթի սկզբից մինչև այժմ Ռաշտ, Էնզելի և Մազանդարան հասած ու զանազան կողմեր ապաստանած գաղթական ընտանիքների թիւն է 450, մօտ 2000 հոգի, որոնցից 60 ընտանիքի չափ անցել են Կովկաս, 300 ընտանիք մնացել Ռաշտում, 40 ընտանիք՝ Էնզելիում և 50 ընտանիք՝ Մազանդարանում։

Արևմտահայերի օրգան Երևանի «Աշխատանք» թերթը 36-րդ №-ում երկրի անապահովութեան մասին ուշագրաւ տեղեկութիւններ է հաղորդում։ Չնայած որ կառավարութեան կողմից ժողովուրդի վերադարձը դէպի երկիրը պաշտօնապէս յայտարարուած է, որից խրախուսուած տարագիր ժողովուրդը ճանապարհ է ընկել ապագայ պայծառ յոյսերով դէպի երկիր, սակայն նոյն այդ կառավարութեան կողմից դժբաղդաբար ոչինչ կտրական քայլ չի արուել ճանապարհին վխտող աւազակների վերաբերմամբ։

Օր չի անցնում, որ դէպի Վան առաջնորդող ճանապարհի վրայ սպանութեան և թալանի դէպքեր չը պատահեն. հեռագիրները ամեն կողմից տեղեկութիւն են բերում քրդական յարձակումների և սպանութիւնների մասին։

Ի՞նչ շահ երկրի վերածնութեան և ստեղծագործող աշխատանքին արգելք և խոչընդոտ հանդիսացող այդ աւազակների գոյութիւնից։

Երբ որևէ քիւրդ բէկ առերևոյթ հպատակութիւն է յայտնել, բայց քիչ յետոյ երբ կռիւը աննպաստ է եղել ռուսական բանակի համար և այս վերջինը ստիպուած է եղել նահանջել, հպատակութիւն յայտնած քիւրդ աշիրաթը անցել է Ռուս բանակի թիկունքը կամ թշնամու շարքերը և այդպիսով ոյժ տուել նրան ու հարուածել մեր զօրքին։

Քրդական այդ բացայայտ շահատակութիւնը պէտք էր խրատական դաս դառնար մեր վարիչներին, որպէս զի զիւրաւ հաւատ չընծայէին նրան և թոյլ չտային, որ արձակ-համարձակ ասպատակեն հայոց գիւղերը և քաղաքների շուրջ։

Վերջին սպանութիւններն և կողոպուտները Վան—Բայազէդ գծի վրայ աւելի ցայտուն կերպով երևան են բերում այն իրողութիւնը, թէ նրանք որքան վնասակար տարր են կազմում երկրի խաղաղութեան և ապահովութեան համար։

Կենտրոնական կառավարութիւնը մի կտրուկ հրամանով կարող էր վերջ կամ գոնեա սահման դնել այս վայրագութեանց։

Հայորդի

## ՀԵՐՔՈՒՄՆ

(Նամակ խմբագրութեան)

*Մեծարգոյ պ. խմբագիր. խնդրում ենք տեղ տալ ձեր թերթի էջերում այս երկտող պատասխանին։*

*«Մշակի» № 195-ում «Խոշոր կորուստ» վերնագրով յօդուածում ասուած է. «Թիֆլիսում յամառ լուրեր են պտտւում, որ Կովկ. Հ. Բար. Ընկ. կից Հայկ. Կենտրոնական Կոմիտէն վերջերս մի խոշոր կորուստ է ունեցել։ Լիազօր Վ. Փափազեանը վերջին խուճապի ժամանակ փախչում է Վանից և գալով Թիֆլիս, յայտնում է, որ իր ստացած 45,000 ռ. գումարից ծախսուել էր 6000 ռ. միայն, իսկ մնացած 39,000 ռ. յանձնուած է եղել մի վստահելի մարդու պահելու. բայց այդ մարդը անհետացել է, տանելով իր հետ դրամները։ Կոմիտէն ուղարկում է իր գործավար Օհանջանեանին որոնելու դրամները թաքնողին և նրան յաջողուել է գտնել 24,000 ռ., իսկ մնացած 15,000 ռ. բոլորովին կորել է». վերջը աւելացնում է՝ «Մենք սպասում ենք բացատրութեան»։*

*Թող փաստերը բացատրութիւն տան.*

*Պ. Վ. Փափազեանը Վանի վերջին խուճապից յետոյ Թիֆլիսի երեսը չի տեսել և ոչինչ չի յայտնել Կոմիտէին։ Զրպարտութիւն առաջին։*

*Կոմիտէն ուղարկում է պ. Օհանջանեանին ոչ թէ գոյութիւն չունեցող դրամ թաքնողին որոնելու, այլ փոխարինելու պ. Փափազեանին, որովհետև վերջինը օգոստոսի 5-ի և 13-ի հեռագրերով ուղարկել էր իր վճռական հրաժարականը։ Զրպարտութիւն երկրորդ։*

*Պարոն Փափազեանի Խոյի օգնականը օգոստ. 12-ին փոխադրում է Կոմիտէին հեռագրով № 24 քսան հազար ռ., երբ դեռ Օհանջանեանը Թիֆլիսից չէր հեռացել, հետևապէս նա չէր կարող յաջողեցնել գտնել, մանաւանդ յօդուածագրի հիւանդ ուղեղի արդիւնք կորած 25,000 ռ.։ Զրպարտութիւն երրորդ։*

*Վերջապէս պ. Փափազեանը ուղարկել է իր ստացած բոլոր գումարների հետևեալ մանրամասն հաշիւը.*

*Մուտք՝ 46,150 ռ., ելքը՝ առձեռն դրամով վերադարձել է Կոմիտէի ներկայացուցիչներին և փոխադրել է 37,315 ռ. 82 կ., ներկայացրել է փաստաթղթերով ծախքերի մանրամասն հաշիւը 8,834 ռ. 18 կ., ընդամենը 46,150 ռ.։ Պարզ է, որ կորած կոպէկ*) անգամ չկայ, ուր մնաց որ 15,000 ռ.։*

*Զրպարտութիւն չորրորդ։*

*Խուճապի ժամանակ Վանի պարենաւորման պահեստում եղել են մթերքներ (ալիւր, շաքար, թէյ), որը պ. Փափազեանը յանձնել է գեներալ Վորոնովին իբրև արքունական ապրանք, որովհետև այդ պահեստները արքունական են։*

*Այս փաստերից յետոյ հասարակական դատին և խղճին ենք յանձնում յօդուածագրին, նրա անմտացածին պրովակացիոն յօդուածով հանդերձ։*

*Անպայման մեղադրելի է և խմբագրութիւնը, որը առանց ստուգելու տեղ է տալիս իր էջերում այդպիսի խոշոր ստերի. մի՞թէ դժուար էր խմբագրութեան համար, նախ քան տպելը տեղեկանալ Կոմիտէի դրասենեակից և ստուգել փաստերը։*

*Այս պատասխանը միաժամանակ ուղարկուած է և «Մշակին»։*

*Կ. Հ. Բ. Ընկ. Պարենաւորման Բաժանմունք*

*Թիֆլիս, 3 սեպտ.*

---

*) **Ծանօթութիւն.**—*Հաշիւների փաստաթղթերի հետ մանրամասն կարող է ծանօթանալ խմբագրութիւնը դրասենեակում, երբ ցանկանայ։*

## ԳԱՒԱՌ

*ՍԱՉԽԵՐԷԹ.—Քութայիսի նահանգի Սաչխերէթ գիւղում ապրում են մօտ 90 տուն հայ։ Սոքա ոչ միայն լեզուով, այլ նիստուկացով, սովորութիւններով ու տարազով չեն տարբերւում տեղացի իմերեցիներից։*

*Միակ բանը՝ որ ցոյց է տալիս նրանց սոմեխի՝ հայ լինելը—եկեղեցին է ու դպրոցը։ Դպրոցը պահւում է Կ. Հ. Բարեգործ. Ընկերութեան 200 ռ. նպաստով, ծխական տուրքով և ժիր ու ամբողջ էութեամբ ազգային այս երկու հաստատութիւններին նուիրուած—երէցփոխ Գրիգոր Յովսէփեան Ղվթիսեանցի՝ եկեղեցուց սահմանուած տարեկան 100—160 ռ. նպաստով։*

*Գ. Յ. Ղվթիսեանցը ընտրուեց երէցփոխ 1907 թ.։ Նորա նախորդը յանձնել էր նորան 9 ռ. 92 կ., բացի այս չնչին գումարից նախորդները յանձնել էին նորան մի փայտաշէն խարխուլ եկեղեցի, որ անձրև ժամանակ լցւում էր ջրով ու շատ անգամ էլ պատարագիչ քահանայի վրայ կաթում։*

*Գ. Ղվթիսեանցը փայտէ կտուրը քանդեց ու ծածկեց սպիտակ ցինկով, եկեղեցու պատերը դրսից և ներսից ներկեց իւղէ ներկով, շինեց երկու սանդուղք տաշած քարից կանանց ու մարդկանց դռների մօտ, նորոգեց վերնատունը, որ քանդուելու վրայ էր, կանգնեցնելով քարէ գեղեցիկ սիւների վրայ և շինեց երկաթէ նրբագործ վանդակներ։*

*Եկեղեցու չորս կողմը փորել տուեց խրամատներ 32 սաժէն երկարութեամբ, որպէսզի փայտէ պատը չը փթէր. շինեց խրամատ և քարով սալայատակեց։ Սալայատակեց և եկեղեցու ամբողջ բակը։*

*Այնուհետև ձեռնամուխ եղաւ դպրոցի բարեկարգութեան՝ Գնեց «Կոզիս Մղարօ» կոչուած խանութը, որի շինութիւնը արժէր առնուազը 2000 ռ.։ Դպրոցի չորս կողմը շինել տուեց քարուկրէ պատ։*

*Այս ահագին ծախսերի հետ միասին նա միշտ տուել է դպրոցին տարեկան 100—160 ռ. նպաստ և եկեղեցու սպասաւորներին էլ ամսական համեստ ռոճիկներ։*

*Գ. Ղվթիսեանցը նուիրուած է դպրոցին ու եկեղեցուն այն աստիճան, որ չնայելով իւր ընտանեկան ծանր կորուստներին (երեք ամիս առաջ մեռաւ նրա 24—25 տարեկան որդին) չը յուսահատուեց, ու էլ աւելի եռանդով կպաւ իր սիրած դպրոցին ու պաշտած եկեղեցուն։*

*Սաչխերէթի հայ հասարակութիւնն էլ ապերախտ չեղաւ դէպի այս անձնուէր մարդը ու երեք անգամ նորան առանց ընդմիջումների երէցփոխ ընտրեց ու աջակցեց։*

*Շուտով կըլրանայ Գրիգոր Ղվթիսեանցի երէցփ. 10-րդ տարին։*

*Ցանկալի կը լինէր և շատ իրաւացի, որ հոգևոր իշխանութիւնն էլ մի բանով վարձատրէր այս անձնուէր երէցփոխին, որը թէ բարոյական մխիթարութիւն կը պատճառէր այս գործունեայ մարդուն և թէ բարի նախանձ կառաջացնէր նրա համարնակիչների և ուրիշ երէցփոխանների մէջ։*

*Աւագ ուսուցիչ Սաչխերէթի՝ Մ. Սահաթեանց*

*31-ն օգոստոսի 1916 թ.*
*Սաչխերէթ։*

---

*ՎԵՐԻՆ ԱՂԴԱՆ, 1 օգոստոսի.—Ամբողջ գիւղը դատարկուեցաւ Ա. և Բ. կարգի երկրապահների զինուորակոչութեան պատճառաւ։ Այս գիւղը, ինչպէս պատմում են, անցեալում ունեցել է բաւական երիտասարդներ, որոնք մաս մաս տարած են պատերազմի ընթացքում, սակայն այս վերջի զօրահաւաքը միանգամայն հարուածեց խեղճ գիւղացութեան։*

*Գիւղում մնացել են միայն մի քանի պառաւ տղամարդիկ և կանայք, որոնց վրայ ծանրաբեռնուած է տնային բոլոր գործերը, մանաւանդ կալերի աշխատանքը։*

Եթէ պատերազմը շուտով չը դադարի՝ գիւղը իր գոյութիւնը կը կորցնէ, և շատերը ստիպուած պիտի լինեն մուրացկանութեան ցուպը ձեռք առնել, եթէ յառաջիկայ աշնանացանի և գարնանացանի աշխատանքներին գործող ուժեր չունենան։

Թանգութիւնը այստեղ վերին աստիճանի է հասած։ Մսի ֆ. արժէ 35—45 կ., իւղը 1 ռ. 20 կ., պանիրը 40—50 կ., ձուն հատը $3^{1}/_{2}$ կ.։

Գիւղը ունի մի երկդասեան ծխ. դպրոց չորս ուսուցչով։

Հաւանական է այս տարի հինգ լինի։

—

ՓԱՐՎԱՆՍԱՐԱ.—Որբանոցը կառավարում է տ. Ե. Տէր-Պօղոսեանը, որը տեսած որբանոցների կառավարչուհիներից գերազանց է իր բոլոր կողմերով. իսկական մայր է հանդէպ այդ որբ և անպաշտպան թշուառներին. պակաս չէ նաև նոյն որբանոցի կառավարչուհու օգնական օր. Ե. Եղիլեանը, որը հակառակ իր տարիքի փոքրութեան՝ ամեն ճիգ ու ջանք գործ է դնում երեխաների մաքրութեան, հանգստութեան, սննդի և մտաւոր ու բարոյական զարգացման համար։

Կերակուրի ժամանակ երկուսով առանց բացառութեան ներկայ են գտնւում՝ անկարգութեանց տեղի չտալու և երեխաներին սոված չթողնելու համար։ Իրենց ձեռքով լողացնում են բոլոր երեխաներին։

Սնունդը.—Առաւօտները թէյ, հաց և պանիր, իսկ փոքրերի համար շատ անգամ կաթ, ճաշին առանց բացառութեան մսեղէն կերակուր։ Երեկոները ըստ կարգի, իսկ երբեմն էլ քաղցր խմորեղէն թէյի հետ։

Հագուստ.—Որբերի հագած շորերը թէև կիսամաշ, բայց շատ մաքուր են. ներքնազգեստները շաբաթը մի քանի անգամ փոխում են, միայն թէ կօշիկի պակասութիւն կայ, որ վտանգաւոր հետեւանքներ կարող է ունենալ ձմեռը մօտենալուն պէս։

Գովելի է նաև որբանոցի վարչութեան աշալրջութիւնը, որի անդամներն են՝ պ. պ. Ս. Եղիլեան, Հր. Սիմօնեան և Գ. Թումանեան։

Պ. Ս. Յարութիւնեանի թելադրութեամբ պիտի ձեռնարկուի կար ու ձև սովրեցնել որբուհիներուն՝ տիկնոջ և օրիորդի աջակցութեամբ։

Թու-Սան

—

ԱԽԱԼՑԽԱ. Որբանոցի «Խայրիկը». Անցեալ 1915 թուականի մեծ գաղթի օրերին ուզում էին քաղաքումս հարիւր որբ տեղաւորել։ Շատերն ուզում էին որդեգրել, շատերը պահել «իրանց տղի» պէս. ունեւորներն ուզում էին սպասաւոր դարձնել։ Բայց այն ժամանակ չաջողուեց որբ բերել։ Այս տարի հարիւր որբ բերուեց. Եղիսաբեթեան դպրոցը ամբողջ ամառուայ ընթացքում որբանոց դարձաւ. հարուստներն և ուսուցչուհիներն աչքի ընկան։ Ամեն կիրակի ու տօն օր գալիս էին կանայք մայրական գուրգուրանք ցոյց տալիս, գիւղացին ու արհեստաւորն ի նպաստ որբանոցի փող բերում։

Առաջին օրերը որբանոցը թանգարանի էր նման. ամենքը գնում էին տեսնելու։ Կանայք լալիս էին. բայց արտասուքը ջուր է, որ քշում, տանում է եղածը։ Տղամարդիկ գործի տէր էին. ուշ ուշ էին այցելում, բայց թէ բոլոր հնարաւոր դէպքերում չէին մերժում ոչ մի բան։

Կար նաև Որբախնամ մասնախումբ։ Որբանոցում միշտ այդ մասնախմբից մի հոգի է երեւում. մէկ էլ «Խայրիկ»ը։

Մի փայլուն դէմք, որ մենք տեսանք, այդ «Խայրիկն» է, որբերի «Խայրիկ»ը։ Խայրիկը մի ներկարար է, բարձրահասակ, չիկահեր, միշտ ժպտուն դէմքով, աշխատանքից ձեռները կոշտացել ու սեւացել են, հանդերձը ներկոտուել է և իւղով ծեփուել։ Արհեստաւորը իր արհեստին է պարապում, տանիքների վրայ երկաթ փակցնում. ունի իր ընտանիքը, իր հոգսերը, բայց նա յաճախ է լինում որբերի մօտ, նրանց վրայ հայրական խնամք և ուշադրութիւն դարձնում, դրսանքի տանում, գիւղերում, քաղաքում փող հաւաքում որբանոցի օգտին։ Որբանոցի կեանքով ապրող, նրա վշտին ու ուրախութեանը մասնակից եղողներից առաջինն է Խայրիկը։ Բանիցս խնճոյքներից ու գիւղերից փող է բերել։ Յարգանք ու պատիւ այդ արհեստաւորին... Այսօր էլ մենք տեսանք այդ ներկոտ մարդուն. որբանոցումն էր, մի ձեռքին դոյլ, միւս ձեռին՝ «Համբաւաբեր»ը, «Հորիզոնն» էլ ծոցից է հանել. այնպէս որ նա միակողմանի մարդ չի, և ապրում է ոչ միայն որբանոցի, այլ և ընդհանուր հայութեան ու երկրի կեանքով և... տեսնում ենք՝ ինչ որ ու որքան որ կարող է՝ այնքան էլ անում է։ Հետեւենք նրան։

Ուրուական

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է յօգուտ փախստականների՝

Թիֆլիսի Փոխադարձ Վարկի Ը-թեան ծառայողներից 14 ռ. 60 կ.

Արմենակ Տէր-Յովհաննիսեանից 5 ռ.

Կարապետ Յարութիւնեանից 5 ռ.

Տիկին Թագուհի Ղարիբեանից 5 ռ.։

### ԴՊՐՈՑԱԿԱՆ ՆՊԱՍՏ

Պ. Վ. Ավ. Դաւթեանը ներկայացրել է Կովկասի Հ. Բ. Ընկերութեան Խորհրդին 200 ռ., իբր տարեկան նպաստ Ղազախի գաւառի Սևի գիւղի դպրոցի համար։

—

### ՃԻՒՂԵՐ

Կ. Հ. Բ. Ընկ. Կարսի որբանոցին նուիրուած դրամական նուէրների ցանկը 1916 ապրիլ—օգոստոս։

Տիկիններ և պարոններ—

Գ. և Մ. Ասոյեան 200 ռ., Մորսեան 180 ռ., Ս. Բէօսէպապեան 100 ռ., եղբարք Ջմշկեանք 100 ռ., Հռ. Յակոբեան 80 ռ., Ստ. Գաբրիէլեանի մահուան առթիւ ընկերները 75 ռ., Մ. Էմէրեան 70 ռ., Տիրուհի Աղապապեանի հոգեհացի սեղանին 56 ռ., եղբարք Տէր-Մինասեանք 50 ռ., Մանան Ասոյեանի մահուան ճաշի սեղանին հաւաք. 41 ռ., Գ. Երզնկեան 50 ռ., Խօջթուլճեան ընտանիքը 50 ռ., Ա. Մսերեան 30 ռ., Ս. Կարանեանցի պսակի հանդէսին հաւաք. 22 ռ., եղբարք Աղաճանեանք 25 ռ., Բ. Ասլանեան 28 ռ., Գր. Սարուխանեան 20 ռ., Թ. Աղապապեան 25 ռ., Եր. Գէորգեան 25 ռ., Ա. Ղանդիլեան 20 ռ., Ավ. Օհաննէսեան 20 ռ., Հմ. Աւետիսեան 20 ռ., Օհ. Մելքոնեան 20 ռ., Արեգնազան Ապաճեան 10 ռ., Յակոբեան 10 ռ., Առ. Բացախեան 10 ռ., Մասճեանք 10 ռ., Տիգ. Էմէրեանի մահուան առթիւ հաւաքած 19 ռ., Ս. Մելիք Սարգսեան 15 ռ., Ե. Վարդանեան 10 ռ., Խ. Գաղանճեան 10 ռ., Թ. Աղապապեան 10 ռ., Յ. Յովհաննիսեան 10 ռ., Բերրոնէ Մանուէլեան 10 ռ., Ս. Մանուէլեան 10 ռ., Յ. Մանուէլեան 5 ռ., Յով. Մելքոնեան 10 ռ., Օրթակէդեկլէրի հասարակութիւնից 15 ռ. 50 կ., Մ. Գոթանճեան 10 ռ., Բ. Փիլոսեան 10 ռ., Թ. Ադամեան 15 ռ., Կատար Սպորչեան 10 ռ., Մ. Ատիկեան 3 ռ., Ե. Ատիկեան 3 ռ., Յ. Գոնդաքճեան 3 ռ., Բ. Մնացականեան 5 ռ., Յ. Մինասեան 5 ռ., Մ. Մատինեան 6—45 կ., Տէր-Մարտիրոսեան 5 ռ., բժ. Հ. Մխիթարեան 5 ռ., Յ. Սիմոնեան 5 ռ., Ց. Պապոնեան 5 ռ., Կ. Պապոնեան 5 ռ., Մ. Աթոյեան 5 ռ., Վ. Ասոյեան 9 ռ., Օրթակէդեկլերի տիկիններէն հաւաքած 7 ռ., Մի ոմն 5 ռ., Գ. Պապանտոլովա 5 ռ., Գ. Պապանտոլովա 3 ռ., Դ. Պապանտոլովա 3 ռ., Ս. Բանհիտովա 3 ռ., Վ. Կարիբով 6 ռ., Պարքինա Պարասկէվավա 5 ռ., Ջողրաֆա Բաս-

Նեստովա 5 ռ., Ազնիւ Սավովա 1 ռ., Գ. Լամպրիադինի 1 ռ., Աղ. Արովեան 1—50 կ.։ Գումարը 1.626 ռ. 45 կ.։

# ՎԵՐՋԻՆ ԼԵՌԱԳՐԵՐ

## ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

*Ներքին-Ախտա—Մամիկոնեանից.*

*Ուղարկեցէք ալիւր. գաղթականները մնացել են քաղցած։ Այս տարուայ բերքը չի բաւականացնի նոյնիսկ տեղացիներին. գաղթականների դրութիւնը շատ նեղ է, ազատեցէք սովից։*

—

*Երևան—Քաղաքագլուխ Խաչատրեանից.*

*Թոյլ տուէք Խաչիկեանին փոխադարձաբար քաղաքին տալ 72 պարկ ալիւր։*

*Հեռագրուած է, որ եղած ալիւրի պաշարի կէսը յանձնուի քաղաքագլխին. ուղարկում ենք մէկ վագոն ալիւր։*

## ՎԵՐԱՆՈՐՈԳՄԱՆ ԳՈՐԾԸ

*Ըստ գեն. Թամամշեանի առաջարկութեան՝ Ընկերութիւնս ծրագրել է մօտ ապագայում բանալ Էրզրումում և Երզնկայում եւս պահեստ։*

*Ըստ ստացած տեղեկութեանց՝ Էրզրումում և շրջակայքում հնարաւորութիւն կայ գնելու մօտ 20 հազար պուդ ցորեն, որով մասամբ առաջին օգնութիւնը բաւական թեթևանում է։*

*Որպէսզի Սարիղամիշից ապրանքների Էրզրում փոխադրութիւնը աւելի փութացուի, Ընկերութիւնս մտադիր է այդ գծի վրայ եւս ունենալ սեփական փոխադրութիւն (տրանսպորտ), որի առաւելութեան մէջ Ընկերութիւնս համոզուել է գործնականապէս, երբ վերջին գաղթին Իգդիր—Վան գծի տրանսպորտը անմիջական օգնութեան հասաւ Վանից եկած գաղթականութեան՝ ոչ միայն կարևոր մթերքներ մատակարարելով, այլ և բաւական հիւանդներ, կանայք և երեխաներ տեղափոխելով։*

*Մտադրութիւն կայ բանալ պահեստ և Երևանի գաւառի Էլլար գիւղում, որպէսզի Ղոխ-Բուլաղի գաւառում բնակեցուցած գաղթականներն հնար ունենան մօտ վայրից մթերքներ ստանալու։*

*Տեղեկանալով, որ Երևանում և շրջակայքում բնակեցուած գաղթականները՝ գնելով Երևանի Ընկերութեանս պահեստից անհամեմատ աժան գնով ալիւր, ծախում են տեղացի հացթուխներին թանգ գնով և ապա ստիպուած լինում թանգ գնով գնել պատրաստի հաց նոյն հացթուխներից, Ընկերութիւնս, այդ չարիքի առաջը առնելու համար, որոշել է Երևանում բնակեցուած գաղթականներին հասանելիք ալիւրը տալ Եղբայրական Օգնութեան Կոմիտէին, որը առանձին գրութեամբ պատրաստականութիւն է յայտնել հաց թխել և պատրաստի հացը ծախել տալ գաղթականներին՝ նուազ գնով։*

# Քրոնիկոն

*Այսօր, ցերեկուայ ժամը 12-ին, Թիֆլիսի Առաջնորդարան են ժողովուելու Թիֆլիսի հայ հասարակութեան և ազգային հաստատութիւնների ներկայացուցիչները ողջերթ ասելու Մեսրոպ Սրբազանին, որը երեքշաբթի ուղևորւում է իր նոր պաշտօնատեղին—Հաշտարխան։*

*Թեմիս Առաջնորդ Մեսրոպ եպիսկոպոսը զինուորական վարչութեան պետից ստացել է մի գրութիւն, որով յայտնում են Նորին Սրբազնութեան, որ Հայոց ծխական դպրոցների ուսուցիչները պէտք է ներկայանան զինուորական ատեանին, որը նրանց ծառայութեան ընդունելուց յետոյ, ժամանակաւորապէս ազատ կը թողնի, մինչև որ Պետրոգրադ միջնորդուի նրանց վերջնականապէս ծառայութիւնից ազատելու։ Արդէն զինուորական ատեանին ներկայացել են Ա. կարգի երկրապահ ուսուցիչները և Առաջնորդի պատասխանատուութեամբ ազատուել. զինուորացու ուսուցիչները իրենց հետ ունենալու են պաշտօնավարութեան վկայական։*

***

*Կարսի ռէալական դպրոցը և օրիորդաց վարժարանը (գիմնազիան), որ գտնւում էին Թիֆլիսում, ամսիս 4-ին փոխադրուեցին Կարս։*

***

*Ելէքտրաքարշի կին-վարիչները (կանդուկտորները) արձակուեցին պաշտօնից, որովհետև նրանց ծառայութիւնը նկատուեց անօգուտ։ Հեռացած այդ կանայք ստանալու են երկու շաբաթուայ ռոճիկ։*

***

*Թիֆլիսի գլխաւոր պոստատանը կից այս օրերս Քաղ. Միութիւնը բաց է անում մի առանձին պոստային բաժանմունք, ժողովրդին աջակցելու, որ նրանք դիւրութեամբ փող, նամակ և ծանրոցներ ուղարկեն Գերմանիայում և Աւստրիայում գտնուող գերիներին։*

***

*Քաղ. Միութիւնը գթութեան քոյրեր պատրաստելու համար շուտով Թիֆլիսում բացելու է նախապատրաստական դասընթացներ։*

***

*Առաջիկայ հոկտեմբերի կէսին Կովկաս է գալու ռուս բանաստեղծ Կ. Բալմոնտը, որը Թիֆլիսում, Բագւում, Քութայիսում և Կովկասեան մի քանի այլ քաղաքներում կարդալու է հետաքրքրական դասախօսութիւններ, նիւթ ունենալով «Սէրը և մահը համաշխարհային բանաստեղծութեան մէջ», «Ռուսթաւելին որպէս արևի բանաստեղծ» և այլն։*

***

*Նահանգապետը թոյլատրեց հրէից ռաբբի Մ. Մարկուսին և փաստաբան Մ. Մայզելսոնին Թիֆլիսում հիմնել մի ընկերութիւն՝ չքաւոր հրէաներին օգնելու համար։ Ընկերութիւնը աշխատանքի անընդունակ հրէաներին տալու է ամսական նպաստ, բանալու է ձրի և էժանագին ճաշարաններ, հիւանդանոցներ, ապաստարաններ, դպրոցներ և այլն։*

***

*Թագաւոր Կայսրի Բարձրագոյն հրամանով Թիֆլիսում պարսից ընդհանուր հիւպատոս է նշանակւում Մեհտի-խան Մոքերիմուդ-Դոուլէն։*

***

*Այսօր Կ. Հ. Բ. Ընկերութեան գրադարանի դահլիճում, երեկոյեան ժամի 7-ին, նշանակուած է խորհրդակցութիւն գաղթականական նոր բացուելիք դպրոցների մասին։*

*Հրաւիրուած են թէ Թիֆլիսի և թէ միւս տեղերի այն կազմակերպութիւնների ներկայացուցիչները, որոնք զբաղւում են գաղթականական գործերով։*

***

*Ամսիս 3-ին չարագործների ձեռքով սպանուել է Շուլաւէրի տանուտէր Արամ Դալլաքեանը։*

# Արտաքին տեսութիւն

## ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԵՒՐՈՊԱՅԻ ՉԷԶՈՔ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*Համաշխարհային պատերազմի յորձանուտ ալիքների մէջ չէզոք պետութեանց դրութիւնը օր ըստ օրէ դժուարանում է։ Այդ ալիքներն արդէն ընդգրկել են հարաւային և միջին Եւրոպայի բոլոր չէզոք պետութիւններին, բացի Սպանիայից, Յունաստանից և Զուիցերիայից։ Առաջինը պատերազմի շրջանից շատ հեռու է ընկնում և առանձին կարևորութիւն չունի, երկրորդը իրապէս գտնւում է նրա ջրապտոյտի մէջ և չէզոք պետութիւն կարող է դիտուել միայն այս բառի պայմանական առումով, իսկ երրորդն այնքան ուժեղ է ռազմապէս, որ հարևան պետութիւններից ոչ մէկն առանց ծանր մտահոգութեանց չի համարձակուի ձեռնամուխ լինել նրա իրաւունքներին։*

*Բոլորովին այլ վիճակի մէջ են հիւսիսային Եւրոպայի չէզոք պետութիւնները։ Հոլլանդիան, Դանեմարքը, Շվեդիան և Նորվեգիան ընկած լինելով Բալթիկ և Գերմանական ծովերի հաղորդակցութեանց գծերի վրայ՝ այս պետութիւնները պատերազմի եռուզեռի մէջ են գտնւում։ Նրանց համակրանքն ու հակակրանքը ներհակ պետութեանց համար հսկայական նշանակութիւն ունի, ուստի և կողմերից իւրաքանչիւրը ահագին ջանք է թափում նրանց բարեկամութիւնը—եթէ ոչ զինակցութիւնը—շահելու։*

*Սակայն միայն այս հակամարտ ազդեցութիւնները չեն վրդովում վերոյիշեալ չէզոք պետութեանց հանգիստը։ Կան և երկու աւելի լուրջ խնդիրներ, որ նրանց մտատանջութիւն են պատճառում։ Առաջինն այն է, թէ արդեօք կռուող պետութիւնները ռազմագիտական (ստրատեգիկ) պահանջներից մղուած կամ քաղաքական նկատումներով չե՞ն խախտի չէզոք երկրների իրաւունքները և արեան ու աւերումի գործը նրանց մէջ տեղափոխի։ Չէ՞ որ Բելգիան զոհ դարձաւ այսպիսի վերաբերմունքի. չէ՞ որ Յունաստանը իրապէս դադարել է այսօր անկախ պետութիւն լինելուց շնորհիւ նոյն վերաբերմունքի։ Ինչու՞ միևնոյն բանը չի կարող կրկնել Հոլլանդիայում, Դանեմարքայում և մինչև իսկ Սկանդինաւեան թերակղզու վրայ... Ահա այսօրինակ հարցերն են կազմում հիւսիսային չէզոք պետութեանց առաջին մտատանջութեան առարկան։*

*Երկրորդ մտահոգիչ խնդիրը տնտեսական բնոյթ է կրում։ Վերոյիշեալ բոլոր չէզոք պետութիւնները շատ խոշոր առևտրական կապեր ունէին Գերմանիայի հետ։ Պատերազմից առաջ էլ այդ կապերը բաւական խոշոր էին, իսկ նրա առաջին տարին հսկայական չափերի էին հասել, որովհետև միայն նրանց միջոցով կարող էր Գերմանիան դրսի աշխարհից ապրանք ստանալ։ Սակայն անցեալ տարուանից Անգլիան բլոկադի այնպիսի խիստ կանոններ սահմանեց Գերմանական և Բալթիկ ծովերում, որ այս լայնարձակ առևտուրն ուղղակի կանգ առաւ։ «Պատերազմական տոկոսների» վարժուած «չէզոք» առևտրականներն այս առթիւ սարսափելի հաւար բարձրացրին Անգլիայի և նրա դաշնակիցների դէմ։ Բայց Գերմանիային քաղցամահ անելու պահանջն այնքան հրամայական էր վերջիններիս համար, որ անգլիական պահականաւերն այդ աղմուկներից յետոյ էլ ամենայն յամառութեամբ շարունակ ձերբակալում էին Գերմանիա ուտեստ և այլ ռազմական նշանակութիւն ունեցող մթերքներ տեղափոխող նաւերը և բերում հայրենի նաւահանգիստները։*

*Բարեբաղդաբար չէզոք պետութիւնները լիովին զգում էին այս «կամայականութեան» անհրաժեշտութիւնը, ուստի և նրանք՝ բացի Շվեդիայից, առանձին համաձայնութեան եկան Անգլիայի հետ, որով նրանց հնարաւորութիւն էր տրւում ծովային առևտրով պարապելու, բայց այն պայմանով, որ հրաժարուեն արգելուած ապրանքներ Գերմանիա ներմուծելու մտքից։ Շվեդիան մինչև հիմա էլ այս կէտում անհաշտ դիրքի վրայ է կանգնած, որովհետև վերջին պայմանը համարում է իր ինքնակալական իրաւունքների ժխտումն։*

*Իրենց քաղաքական և տնտեսական շահերը հաւաքօրէն պաշտպանելու համար՝ հիւսիսային չէզոք պետութիւններից երեքը՝ Շվեդիան, Նորվեգիան և Դանեմարքը պատերազմի ընթացքում մի քանի անգամ համագումարներ (կոնֆերանսներ) են ունեցել և ընդհանուր գործելակերպ մշակել։ Այս շաբաթ ևս Քրիստիանիայում այդպիսի մի համագումար է սպասւում, ուր պէտք է քննուի Ռումանիայի հանդէս գալուց առաջացած դրութիւնը և համապատասխան գործելակերպ որոշուի։ Նախորդ համագումարները, որոնց մասնակցում էին և միապետները, բաւական անհանգստացնում էին Քառապետական Համաձայնութեանը, որովհետև Գերմանիայի յաղթական առաջխաղացութեան այդ ծանր օրերին նրան զինակցելու կողմնակիցների կամ, ինչպէս ասում են, «ակտիւիստների» թիւը չէզոք պետութեանց մէջ և մանաւանդ Շւեդիայում բաւական մեծ էր։ Սակայն ներկայումս այդ նախկին անհանգստութեան հետքն անգամ չկայ։ Վերջին ամիսների պատերազմական գործողութիւնները կոյրին էլ կարող են համոզել, որ գրեթէ բոլոր ռազմաճակատներում ուժերի գերակշռութիւնը Քառապետական Համաձայնութեան կողմն է։ Նման հանգամանքներում չէզոք պետութիւնները չեն, որ պէտք է ցնորքներով տարուեն կամ անխոհեմ քայլեր անեն։*

*Չէզոք պետութեանց և մանաւանդ Դանեմարքի և Հոլլանդիայի հանդէպ ներկայումս Գերմանիան է անհանգստութիւն զգում։ Ռազմաճակատներում իր դիրքի խախտուելը մի կողմից և Ռումանական անակնկալը (սիւրպրիզ) միւս կողմից խիստ կասկածոտ են դարձրել նրան վերջերս։ Լրագրական տեղեկութիւններից երևում է, որ գերմանական արդիւնաբերողները և առևտրականները նախազգուշական միջոցներ են ձեռք առնում, որ Հոլլանդիայում և Դանեմարքում, որև է անակնկալի դէպքում, իրենց շահերը չտուժեն։ Նրանցից շատերը, այս երկրներից ստացած պատուէրները կատարելու համար, պահանջում են, որ նախապէս պատուէրի արժէքը դրուի գերմանական բանկերում։ Այս բոլորը լաւ նշաններ չեն, իհարկէ, բայց թւում է, որ ինչպէս Քառապետական Համաձայնութեան նախկին անհանգստութիւնը, նոյնպէս և Գերմանիայի ներկայ կասկածամտութիւնը իզուր են։ Ոչ ժողովրդական հոգեբանութիւնը և ոչ էլ քաղաքական-տնտեսական շահերը հիւսիսային Եւրոպայի չէզոք պետութիւններին չեն թելադրում զէնքով միջամտել համաշխարհային պատերազմին։ Նրանք կըպահպանեն իրենց չէզոքութիւնը, մինչև որ մի* force majeure *նրանց չստիպի հակառակն անելու։*

Ա. Ջ.

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ԻՏԱԼԱՑՈՑ ՄԱՄՈՒԼԸ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

Ե.

### ՀԱՅԱՍՏԱՆԸ ԿԵՑՑԷ՛. ԿԵՑՑԷ՛ ՀԱՅԱՍՏԱՆ.

*Այս առաւօտեան լրագրերի կարճ հաղորդագրութիւնը թէ «Էրզրումն ընկաւ ռուսաց ձեռքը», հրճուեցնում է աշխարհիս ազատութեան բոլոր բարեկամներին։ Այդ՝ ազգայնութեան ու արդարութեան սկզբունքների վերջնական յաղթանակն է, որի համար Իտալիան ի սպաս դրել է իւր անունը և իւր զաւակների լաւագոյն արիւնը։*

*Բայց ես երևակայում եմ ուրախութեան այն արտասուքները, որ թափում են այն՝ ի սփիւռս աշխարհի՝ Զէնաստանից-Ամե-*

*
* *

Գեղականներով (իգէալներով) բեղուն, բայց թուով սակաւաւոր, ազատութեան ծարաւի և բարբարոս թշնամիներից շարունակ ճնշման ենթակայ Հայ ժողովուրդը դարերից ի վեր բռնել է պանդխտութեան ճանապարհները, ըստ որում նա ինքզինքն միշտ պահպանում է մի ազնիւ արժանապատուութեամբ։ Եթէ Միլանի և Թորինոյի հայերից մէկ մէկու մօտ բերէք, հեշտութեամբ կը նկատէք, թէ ինչպէս նրանց կանանց մէջ պահւում են իրենց ցեղի գեղեցկութեան բնորոշ գիծերը. մեծ մեծ աչքեր, շատ սև մազեր, թխագոյն մորթ, մինչդեռ տղամարդիկ, աւելի նկատելի է, մի տեսակ լուռ ինքնամփոփման մի վիճակ, մի լուրջ և քիչ էլ տխուր մի արտայայտութիւն դէմքին, որի վրայ կարծես արտացոլում են կորած, գեղեցիկ և հեռաւոր ծննդավայրին համար հալումաշ սրտի հայրենի անձուկը (nostalgie)։

Ներկայ պատերազմի բռնկուելուն հետ Իտալիայում բնակուած հայերը իրենց մի քանի շնորհալի, սրտոտ օրիորդների և տիկնանց աջակցութեամբ սկսան հրատարակել և տարածել մի ամսաթերթ «Armenia» անունով, որի վերնաճակատին տպուած է այս պերճախօս նշանաբանը՝ «Հայ իրաւանց վերականգման արձագանք» և որի սուրբ ու վեհ նպատակն է՝ նկարագրելով բոլոր այն հին և նոր չարագործութիւնները, որ այսօր, Վիեննայի և Բեռլինի դաշնակիցներից թև ու թիկունք գտած թրքական բարբարոսութիւնը գործ է դնում հազար հազար կանանց և երեխայոց վրայ՝ հրաւիրել բոլոր բարեսիրտ և մեծահոգի մարդկանց՝ ուրեմն և իտալացոց և իտալուհիների ուշադրութիւնը՝ դժբաղդ Հայաստանի հարցի վրայ։

Անցեալում միմիայն պարզ տեղեկութիւնները, որ մեր ապաշնորհ քաղաքակրթութիւնը մերթ ընդ մերթ ստանում էր այս դժբաղդ ժողովուրդի վիճակի մասին, կայանում էր Աբդուլ Համիդի և սրա արժանի յաջորդ Էնւէրի կառավարութեան կատարած ջարդերի շուրջը, որոնք՝ կամ պետութեան դատարկ գանձարանը լցնելու կամ պարզապէս կողոպուտի ծարաւից հրամայուած էին պարբերաբար կատարած, թալան հայերի թէ Կ. Պոլիս վերաբնակուածների և թէ երկրում Թիւրք կառավարիչների խնամքին յանձնուածների։

Բեռլինի դաշնագիրը 1878 թուին թողնելով Թիւրքին հայոց երկրի մի մեծ մասի տիրութիւնը, միաժամանակ պատրաստել էր նրա համար բարենորոգումների մի ծրագիր։ Այնուհետև երբ հայոց հարցը մէկ-մէկ բարձրացւում էր արևմուտքի մամուլում, Թիւրք կառավարութիւնը մտածեց, որ Հայոց հարցը լուծելու ամենակարճ միջոցը փոքրաթիւ հայերը բնաջինջ անելն էր։ Եւ վերջերս տեղի ունեցան կոտորածներ, որ Թիւրք հորդաներ այս անգամ առաջնորդ ունենալով իրենց գերմանացի սպաներ՝ կոտորեցին Էրզրումում, Վանում, Ադանայում և այլն, մանաւանդ այն օրից, երբ հայերը (ծեր թէ երիտասարդ) անցան սահմանը կազմելով աւելի քան քսան հազար կամաւորների մի բանակ, որպէս առաջապահ կովկասեան ճակատի ռուս բանակի, այսօր մրցում են հայրենիքի համար մեռնելու գործում, ճիշտ ինչպէս մեր Թրիէստեցի irredenti երիտասարդները, որոնք իրենց բնագաւառի ազատութեան համար առաջինը զոհուելը պատիւ են համարում իրենց։

Մինչև իսկ մի գերմանուհի ճամբորդ խոստովանեց, որ պատերազմի հենց սկսելուն պէս Հայաստանը մատնուեց կրակի, ջարդի ու կողոպուտի։ Լրագրները հրատարակեցին մի քանի սանձարձակ կոտորածների վայրագ ողբերգութիւններ, որ արիւնագոյն ներկեցին Տիգրիսի ջրերը։ Ըստ մի պաշտօնական հաղորդագրութեան՝ 20,000 երեխայ սպանուելով շպրտուեցին գետի ջրերի մէջ*), երբ Կ. Պոլսի մէջ դրանցից աւելի մեծկակներ ծախւում էին 5—6 ոսկով, մի գին՝ որ սակաւ ինչ աւելանում էր, եթէ ծախուելիքը սիրուն հայուհիներ էին լինում։

*) Միամիտ, սաստիկ չափազանցուած է դրա երեխաների թիւը։ Ա. Ձ.

* *
*

Արդ խոնարհուելով հիացմամբ ողջունենք այս մարտիրոս ժողովուրդը, որ մի փառաւոր և ազնիւ անցեալից գիտացել է և գիտէ պահել իրեն այնքան արժանապատուութեամբ։

Ողջունենք, եղբայրներ, մեր այսօրուան լուռ դաշնակիցը, որ սպառուած հասարակութեան վերջին վերապրողները տուեց դաշնակիցների և ազատութեան մեծ դատին համար և որ մի հինաւուրց համակամութեամբ, բայց նոր հաւատքով օգնում է մեզ հետ, մեզ համար, և յոյս ունի մեզ հետ վերջնական յաղթանակին։ Արդար է և պարտաւորական որ քաղաքակիրթ Եւրոպան հսկումի այս սրբազան ժամին անի իր ամենազգական խոստումը, որ վերջին հաշուէյարդարութեան օրը հայի հին օրերից ի վեր թափած արցունքները չեն մոռացուելու և արդարութեան համար ինքնաբերաբար և առանց կանխօրօք մի բան խնդրելու նրա տուած այսօրուան արիւնի և հաւատքի տուրքը իզուր չէ կորչելու։

Խոստանանք հանդիսաւորապէս, որ վաղն ամեն բան մոռացնել տուող օրուան այգուն, Հայաստանին պէտք է տրուի ազատ ժողովուրդների մէջ իրան արժանի տեղը և պատմութիւնից պիտի ջնջուի ամօթանքն այն գերութեան, որ ամենից անարդարների կարգից է և առանց այդ ջնջուելու է նոյն ինքն քաղաքակրթութեան ամօթանքը։

Էրզրումի անկումը դէպի ակնկալուած փառաւոր վախճանը մի մեծ քայլ է։

Nino g Caimi

Թրգ. Արշ. Ձէթվաճեան

# Գրականութիւն

## ԴԱՐՁԻ՛Ր.

Ա՜խ, դարձիր, դարձիր
Իմ քնքուշ սատղիկ,
Իմ սիրած աղջիկ.
Սպասում եմ ես
Քեզ կարօտ սրտով
Իմ յոյս հոգեթով.
Սիրտս փտում եմ,
Որպէսզի դու գաս
Իմ սիրուն երազ...
Իմ քնքո՛ւշ մանկիկ
Լուսեղէն աղջիկ,
Սպասում եմ քեզ
Անքո՛ւն, անհանգիստ...
Ա՜խ, դարձիր, դարձիր
Էլ ինձ մի տանջիր —
Իմ ոսկէ անուրջ
Իմ սրտի մրմունջ...

Տիգրան Տէրունի

# ՍԵՐԲԻԱՅԻ ՎԻՇՏԸ

(ԴՈՒՉԻՉ)

Էլ չէ փչում ցուրտ քամին։

Մոմբլան և իրա լեռների ստորոտներն արդէն սկսել են կանաչել գարնան արևի անդրանիկ ճառագայթների տակ։

Հետզհետէ անյայտանում է սպիտակ ծածկոցը և տեղը երեւում քնքոյշ կանաչը, կապելով մեզ հայրենի սիրով։ Էլ այնպէս ցուրտ չէ և արևը ջերմացնում է մեզ իր առատ և քնքոյշ ճառագայթներով։

Գարունն է գալիս։

Կամաց կամաց հողը արթնանում է ձմրան քնէածութիւնից. ամբողջ բնութիւնը նորից կենդանանում է, ծաղիկները ցոյց են տալիս իրենց քնքոյշ պսակները, ծառերը ծաղկում, կոկոնները լցւում և բնութեան մէջ ծնւում նոր կեանք։ Այդ կեանքը զարթնում է, որ մեզ փաղաքշի և դիւթի։

Եւ իմ բոլոր ջղերը, մարմնիս բոլոր կապերը կարծես թէ ազատւում են մեռելութիւնից։ Կուրծքս լայնանում է և ես ուժեղ թափով ներշնչում եմ գարնանային օդի բուրմունքը։

Երևակայութիւնս գործում է արագ և մտքերս սլանում են հեռու։

Գարունն է գալիս։

Բայց իմ միտքս այստեղ չէ։ Նա սլացել է հեռու և հեռու. այնտեղ, ուր հոսում է կապուտակ Դանուբ գետը, ուր գլորում է իր հարթ ալիքները Սաւա գետը, ուր ճռնչում է Վարդարը և ուր վազում է իմ նազելի Մորաւան։ Միտքս այնտեղ են, ուր մնացել է իմ հարազատ երկիրը, որին ես մոռանալ չեմ կարող։

Ընդարձակ տարածութեան և բարձրաբերձ լեռների վրայով միտքս ինձ տարաւ, և ես կրկին սիրելի երկրումն եմ։

Ես տխուր թափառում եմ հայրենի երկրի շաւիղներով, ուր սակաւ ինչ առաջ տիրում էր ուրախ կեանքը և ուր այժմ ամեն ինչ յիշեցնում է ընդարձակ գերեզմանոց։

Եւ դիմում եմ մի գերեզմանից միւսը և հարցնում ինքս ինձ, հարցնում մարդկանցից, Աստծուց.

—Ո՞ւր են եղբայրներս, ո՞ւր իմ ժողովուրդը...

Բայց մինչև Աստուած հեռու է և Նա ինձ չէ լսում։

Մարդիկ խուլ են—ինձ չեն պատասխանում և խօսքերս մեռնում են շրթունքներիս վրայ։ Եւ լռում են ամենքը—Աստուած և մարդիկ։

Եւ յանկարծ, որտեղից որտեղ, գետնի տակից, գերեզմաններից մինչև ինձ հասնում է մի անծանօթ ձայն.

—Քո եղբայրներն ու քոյրերը անխիղճ կերպով մորթոտուած են, քո ժողովուրդը խեղդուած։ Քո ազգի ամենալաւ որդիքը ընկան պատերազմի դաշտում պաշտպանելով հայրենիքը, երկրի ազատութիւնը, ուր արիւնարբու թշնամին կախում էր, գնդակահարում, թրով կոտրատում կամ ձգում մութ բանտի մէջ քո եղբայրներին և քոյրերին։ Նրանք, որոնք մնացել են կենդանի, բոլորը ցրուած են աշխարհի բոլոր ծայրերում։ Շատ քչերն են մնացել իրենց կիսաւեր տներում, որոնք ենթակայ են անտանելի տանջանքների, իսկ ոմանք գնում են դէպի թարմ գերեզմանները և աղերսում մեռելներին բանալ իրենց դագաղները և իրենց գրկի մէջ թագցնել թշնամու գազանութիւնից։ Եւ ես տեսնում եմ մտքով իմ երկիրը, որը այնքան գեղեցիկ, այնքան լիառատ էր սակաւ ինչ առաջ, իսկ այժմ անարգուած, արիւնով ներկուած և հրկիզուած, ոտքի տակ տուած...

Ես շրջում եմ և փնտռում իմ ազգի որդիքն ու դուստրները։

—Ո՞ւր են եմ եղբայրներն ու քոյրերը, ո՞ւր է իմ ժողովուրդը։

—Մենք այստեղ ենք, պատասխանում են գերեզմանները։

—Մենք այստեղ ենք, պատասխանում են բանտերը։

—Մենք այստեղ ենք, ձայնակցում են ուրիշները։ Մենք թագնուել ենք լեռների խոռոչներում ինչպէս վայրենի գազաններ՝ առանց կերակրի, առանց տուն ու տեղի։

Ո՜հ, ես գիտէի արդէն, որ խմբերով ընկան իմ եղբայրներն ու քոյրերը։ Ես գիտէի և նրանց վիճակը, որոնք թագնուել էին վայրի լեռների խոռոչներում։

Եւ անհուն վշտով դիմում եմ նրանց.

—Իմ տարաբաղդ եղբայրնե՛ր, ի՞նչպէս կարող էք դուք այստեղ ապրել, չէ՞ որ այս վայրի լեռներում ապրում են միայն գիշատիչ գազանները։

—Մենք ստիպուած էինք փախչելու այստեղ մեր թշնամիների կատաղութիւնից, պատասխանում են նրանք։ Գիշատիչ գազանների որջերում մենք ապաստան գտանք մեր թշնամիներից և մենք ապրում ենք կերակրուելով խոտով և արմատներով, որ գտնում ենք լեռներում։ Գիշատիչ գազանները այնքան կատաղի չեն, ինչպէս մեր թշնամիները, որոնք աւերակ են դարձնում մեր երկիրը, այրում տները, տանում մեր ցորենը, մորթում մեր երեխաներին, անպատւում մեր նախահայրերի գերեզմանները...

Ես այլևս չէի լսում։ Սարսափը պատել էր ինձ և երակներիս մէջ կանգ առել արիւնը։ Ես խեղդւում էի և այրող արցունքները հոսում էին իմ աչքերից։

Ես ողբում էի իմ երկրի և ազգի բաղդը։

Ես նորից թափառում եմ իմ քարուքանդ արած և կողոպտած անապատ երկրում և չեմ կարողանում ճանաչել իմ մանկութեանս օրրանը։

—Ի՞նչ է պատահել այստեղ, հարցնում եմ ինքս ինձ։

Ո՞ր անգութ, մահուան մանգաղը անցել է այս գեղեցիկ, պարարտ և աշխարհիս մէջ բաղդաւոր երկրի վրայով։

Այս երկրի, ուր միմիայն լսւում էին ուրախ երգեր ու ձայներ, հնչւում իմ ազգի քաղցր բարբառը։

Ի՞նչի է նման այժմ այդ երկիրը։ Միայն մի ընդարձակ գերեզմանատուն։

Ամեն ինչ մեռած է, տխուր, մռայլ։ Ամենքը հիւծուած են սովից և լսւում են միայն մանուկների կականը, կանանց հառաչանքն և անուժ ծերերի ծանր տնքոցը...

Բայց աւա՜ղ, ես լսում եմ նաև օտար խօսքեր, որոնք խիստ և անճոռնի են հնչւում ականջիս և ես տեսնում եմ անծանօթ և օտար մարդիկ... Օ՜, ի՞նչ է պատահել իմ երկրին, իմ ազգին...

Իսկ գարունը գալիս է։

Արևի ճառագայթների տակ հալւում են ձիւները և իմ հայրենիքի լեռներով արագ հոսում են գետերը, ուռցնում ջրերը և տանում իրենց հետ իմ ազգի զաւակների դիակները...

Սակայն այդ գետերը, որոնք ուռչել են անձրևներից և հալւող ձիւնից, չեն կարող սրբել բոլոր արիւնը, որ թափել են իմ ազգի որդիքը առատապէս ներկելով հայրենի հողը։

Բարձր լեռներից քամին է սուլում և քշելով ամպերը պարզում է երկինքը։ Բայց նա էլ չի կարողանում ցամաքեցնել իմ ազգի որդոց և դուստրների երեսի արցունքները, որովհետև այդ արցունքները հոսում են անընդհատ և ողողում նրանց երեսները։

Եւ ինքը արևը, գարնանային գեղեցիկ արևը, որի ճառագայթների տակ հալւում է ձիւնը և զարթնում բնութիւնը, անզօր է ջերմացնելու իմ ազգի բարեկամների սրտերը և օգնելու նրան, քանի նա ճնշւում է, քանի դեռ ապրում է...

—Ո՜հ... իմ ազգ... կունենա՞ս արդեօք այնքան ոյժ տոկալու, տանելու այս լուծը մինչև այն րոպէր, երբ դու վերականգնելով ուժերդ՝ փշրես քո ձեռք ու ոտը կաշկանդող շղթաները...

Վերջապէս ե՞րբ պէտք է զարկէ վրէժխնդրութեան ժամը։

Գարունը գալիս է։ Երկիրը զարթնում։ Ամբողջ բնութիւնը վերածնւում է նոր կեանքով։

Կվերածնէ՞ արդեօք նոր կեանքով և իմ հայրենիքը, իմ ազգը...

(Թարգմ.) Բ. Այվազեան

## ԳՐԱԿԱՆ ՆՈՐՈՒԹԻՒՆ

Տպագրուած է և շուտով լոյս կը տեսնի Լեւոն Շանթի նոր պիէսը «Կայսր» վերնագրով։ Նիւթը առնուած է Յովհաննէս Չմշկիկի, Բիւզանդիոնի կայսեր կեանքից։ Դրամատիկ Ընկերութիւնը մտադիր է ներկայացնելու Շանթի նոր թատերգը (պիէս)։

## ՍՏԱՑՈՒԱԾ ԳՐՔԵՐ

Ստացանք Ք. Քուչուկ—Յովհաննիսեանի Краткій очеркъ Армянской литературы V вѣка", „Армянскія Надписи изъ Крыма" և „Григорій Нисскій" աշխատութիւնները։

# Գիտութիւն

## ԴԵՂ

### ԽՈԼԵՐԱՅԻ ԴԷՄ

Մեր հին գրականութեան մէջ կան յայտնի բժշկական գրքեր «Մխիթար Հերացու, Ամեր Դովլաթի և այլն, այլև մանր մունր գրուածքներ զանազան ձեռագիր բժշկարաններում, որ օտարները՝ գերմանացիներ սկսել են թարգմանել և հրատարակել երկար տարիներ նուիրելով այս կամ այն գրուածքի ուսումնասիրութեան։

Մինչդեռ մենք այսօր ունինք հարիւրաւոր հայ բժիշկներ, որոնք մաս մասի չեն տուել։ Սրանք նոյն իսկ նեղութիւն չեն քաշել հետաքրքրուել իրենց շրջապատում դարերից ի վեր և ցարդ տեղի ունեցող ժողովրդական բժշկութեան և բժիշկների վրայ։ Ինչպէս Թիֆլիսում կայ յայտնի Բաջիաշուիլին, որ Կովկասի հանգուցեալ Նախորդ Փոխարքային բժշկել է և վկայական ունի, այնպէս էլ կան Ռուսահայաստանի շատ գաւառներում աւելի կամ նուազ հռչակուած ժողովրդական բժիշկներ և բժշկուհիներ, որոնք երբեմն ուղղակի հրաշքներ են գործում, մանաւանդ վիրաբուժական մասում։ Սակայն այն, ինչոր պակասում է ժողովրդական բժշկին, այն ունի բժշկականութեամբ՝ բժշկական գիտութեամբ զինուած այժմեան մեր բժիշկները, որ շատ անգամ պէտք է քննեն ու վերաքննեն ժողովրդական միջոցները և ասեն գիտութեան վերջին խօսքը։

Այսօր ահա մի այսպիսի առիթ է ներկայանում։ Աղեքսանդր Պապովեանց, որ ապրում է Ջորաբաշի փողոց № 14-ում, «Համբաւաբերին» ուղղուած մի նամակով աւետում է, թէ ինքը Մանդակունի քահանայի «Ոսկի բարեկամ» գրքի ցուցմունքով իւր կնոջը բժշկել է խոլերայից և այն էլ վայրկենապէս։ Մենք բժիշկ չլինելով չենք կարող ոչինչ ասել, բայց կարող ենք յուսալ որ մեր հմուտ բժիշկների ուշք կը դարձնեն և կստուգեն այս դէպքի ճշտութիւնը. ուստի և տպագրում ենք նամակը.

«Մեծապատիւ խմբագիր Տէր. Խնդրում եմ երկտողս ընդունել պատուական թերթումդ։ Ես բնակւում եմ Մետեխի Ջորաբաշի փողոցում։ Կէս գիշերին կինս խոլերայից բռնուեցաւ. միտ բերելով «Ոսկի բարեկամի» 1028 էջի հրաշագործ դեղի զօրութիւնը, մանաւանդ գիտենալով՝ որ շատերն այդ դեղը գործ դնելով բժշկուել են, ես էլ սկսեցի այդ դեղը խմեցնել՝ և կինս նոյն բոպէին և եթ բժշկուեցաւ։ Ստուգութեանը՝ վկայում եմ հրապարակաւ, իսկ կասկածողները թող գործ դնեն և կըտեսնեն այդ հրաշագործ դեղի զօրութիւնը»։

Սկայ

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆԳԻՆ ՄԱՍՈՒՆՔ ՄԸ

Շուշան Իշխանուհի

Տարիներ առաջ Անիի աւերակներուն մէջ խուզարկութիւններ կատարած միջոցիս՝ քաղաքին Ծաղկոցաձոր կոչուած բաժնին քարայրներէն մին ուշադրութիւնս գրաւած էր. ուստի նոյն քարայրին մէջ մասնակի պեղում մը կատարելով երևան բերի մարդկային կմախք մը, որ իր վրայ կը կրէր իշխանական ամեն հետք։ Մարմինը ոսկեթել պատանքով մը (կամ պատմուճանով մը) փաթթուած էր, և դրուած՝ մասնաւոր դագաղի մը մէջ։ Գըլխուն մազերուն մէկ մասը փճացած չէր դեռ. նոյնպէս և ակռաներուն մէկ մասը կը կենար։

Այս իշխանական կմախքին քով, միևնոյն գերեզմանին մէջ թաղուած էր փոքրիկ աղջիկ մը, մօտաւորապէս 5—6 ամսուան, որուն մարմինը՝ մ ո մ ի ա յ վերածուած՝ անվնաս մնացած էր, և վրայի մորթը փակած էր ոսկրներուն։ Անշուշտ գտած կմախքս այս երախային մայրն էր, և երեխան թաղուած էր իր մօր քով։

Բայց ո՞վ էր այս կինը։

Անոր մազերուն, պատանքին ու դագաղին մէկ մասին անաղարտ մնալէն կարելի էր հետևցնել, թէ անիկա Անիի վերջին վաչկատուն բնակիչներէն մէկուն՝ Քրդուհիի մը մարմինն էր։ Բայց այս ենթադրութիւնս բոլորովին օդը ցնդեցաւ, երբ նոյն գերեզմանին մէջէն կարմիր քարէ կոտրած խաչարձան մը գտայ, թէև առանց արձանագրութեան։ Այլ ևս տարակոյս չկար, թէ կմախքն ու երեխան կը պատկանէին Անիի հին քրիստոնեայ—հետևաբար և հայ—բնակչութեան։ Այս պարագան նկատի առնելով հայկական հին գանկերու ուսումնասիրութեան և գանկաբանական հետազօտութիւններու համար՝ գլուխը հետս առի և միասին Փարիզ բերի, չմոռնալով դագաղէն ու պատանքէն ալ նմոյշներ առնելու։ Գլուխն հետս առնելէ ետք, բնական էր թէ մոմիացած երեխան ալ հետս պիտի բերէի, զոր կատարեցի անթերի։

Այս օրեր ֆրանսական Արձանագրութեանց և գեղեցիկ-Դըպրութեանց Ակադէմիային համար Անիի արձանագրութիւններս կարգի դրած ժամանակ նկատեցի, թէ նոյն Ծաղկոցաձորի քարայրներէն մէկուն մէջ, ճիշտ այնտեղ ուր գտած էի յիշեալ կըմախքը, պատին վրայէն հետևեալ արձանագրութիւնն օրինակած եմ.

### Ք ԱԾ ՈՂՈՐՄԵԱ ՇՈՒՇԱՆԱ ԱՂԱԽՆՈ ՔՈ

Ուրեմն՝ այս քարայր-դամբարանը կը պատկանէր Շուշան անունով տիկնոջ մը։

Արդ՝ նկատելով որ Անիի Ապուղամրենց Ս. Գրիգոր անունով ծանօթ եկեղեցիին դրան վրայ երկիցս յիշուած է «Շուշան, տիկնաց տիկին, ղիւզակից Գրիգորս իշխանի», կը հետևցնեմ, թէ այս վերջինս նոյն է կմախքին տիրուհիին հետ։

Ուրիշ կարևոր փաստ մը՝ բոլորովին կը հաստատէ իմ այս ենթադրութիւնս։ Ահա այն փաստը։

Յիշեալ Ս. Գրիգոր եկեղեցիին կից՝ ուրիշ մատուռ մը հետքերը կան։ Այս մատուռը, ինչպէս կերևի Ս. Գրիգորի պատին վրայ գրուած արձանագրութենէ մը, շինուած է 1040ին Ապլղարիպ Հա(յ)ոց մարզպանին կողմէ, որ էր «որդի Գրիգորո և թոռն Ապուղամրի Հայոց Իշխանաց», և ծառայած է իբր դամբարան, կամ՝ արձանագրութեան բառերով «հանգստարան հաւր իմո Գրիգորո, և եղբայր իմո Համզէի, և քեռ իմո Սեդաի»։ Ոչ մէկ յիշատակութիւն իր մօր՝ Շուշանի գերեզմանի մասին։ Ասկէ կը հետևի, թէ Շուշան իրեն համար զատ դամբարան մը պատրաստած էր իր կենդանութեան, և մեռնելէն ետք՝ իր փափագին համեմատ՝ թաղուեցաւ իր անձնական դամբարանին մէջ. իսկ Գրիգորի մեռնելէն ետք՝ իրենց Ապլղարիպ որդին Ս. Գրիգորի կից ընտանեկան «հանգստարանը շինել տուաւ և հոն ամփոփեց՝ բայց Շուշանէն՝ իր հօր և վախճանած եղբօր ու քրոջ նշխարները։

Ուրեմն իմ ձեռքս գտնուած գանկը՝ «տիկնաց տիկին» Շուշան իշխանուհիին անգին գլուխն է, զոր պիտի նուիրեմ Հայկական ապագայ Թանգարանին։

Գրիգոր իշխանը՝ Անիի վերջին տարիներուն պաշտպան Վահրամ Պահլաւունի սպարապետին հայրն է և Գրիգոր Մագիստրոսի մեծ հայրը։

Կ. Յ. Բասմաջեան

# Մատենախօսութիւն

## ՎԱԼԵՐԻՅ ԲՐԻՒՍՈՎԻ ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆԸ*)

### ԱՆՖԻԹԷԱՏՐՈՎԻ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ՀՌՈՎՄ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՆ

Մնում է յարել, որ Հայերը, չնայելով ճակատագրի այդպիսի փոփոխութիւններին, իւրեանց հազարաւոր տարիների պատմական գոյութեան միջոցին, ստեղծեցին ինքնուրոյն կուլտուրա, գիտութեան գանձեր մշակեցին և թողին աշխարհի համար ճոխագոյն գրականութիւն, որ դժբաղդաբար մինչև այժմ ըստ արժանւոյն չէ ուսումնասիրուած։ Հայոց պատմիչների երկերը վաղուց ճանաչուած են ու շահագործւում են, քանի որ դրանք պահպանել են մեզ տեղեկութիւններ, որ չկան բոլոր այլ աղբիւրներում։ Հայոց թարգմանութեամբ մեզ հասել են հնագոյն հեղինակների բազմաթիւ երկեր, որոնց բնագիրները անհետացած են։ Բայց անշուշտ բարձր գին ունի Հայոց միջնադարեան քնարերգութիւնը (лирика), ուր արևելեան վառ երևակայութիւնը և փարթամ պատկերները հիանալի կերպով զուգակցւում են հելլենական ներդաշնակութեան ու զսպման հետ. վայելուչ միացում Արևելքի ու Արևմուտքի սկզբունքների։ Անտարակոյս, հայկական միջին տարիների քնարերգութիւնը, երբ լայն ծաւալ կստանայ, համայն մարդկութեան լաւագոյն գոհարների թւում կը դասուի։ Վերջապէս, բուն իսկ Հայաստանի պատմութիւնը, որ ինքն ըստ ինքեան միակ մի դիւցազնական վիպասանութիւն է, պատմագրի համար տակաւին ծածկուած գանձ է, որի հարստութիւնները պէտք է միայն լոյս աշխարհ հանել, որ փայլեն հազարաւոր բազմերանգ նշոյլներով»։

Այնուհետև Վ. Բրիւսովը սկսում է քննադատել Ա. Ամֆիթէատրովի յիշեալ գիրքը։ Այս հարստութիւնից, ասում է նա, Ամֆիթէատրովը ընտրել է մի փոքրիկ մասը և խոհեմութեամբ է վարուել, վասն զի հազիւ թէ հնարաւոր է խօսել երկու ու կէս հազար տարիների պատմութեան մասին մի փոքր գրքում։ Մէջ բերելով գրքի կարճ բովանդակութիւնը, նա շեշտում է, թէ հեղինակը գրում է թեթև, լաւագոյն տեղերում — հրապուրիչ է, բայց յաճախակի թերթօնագրի (ֆելետօնիստի) ոճով է արտայայտւում։ Այսպէս Ա. Ամֆիթէատրովի գիրքը մի ինչ-որ միջին տեղն է գրաւում գիտական հետազօտութեան և ընդհանրացման. գործի եղանակը գոյութեան իրաւունքը ունի, որ վերջին տասնամեակներում շատ պատմագիրներ մշակում են Արևմուտքում։ Սակայն, ընդունելով մեթոդի օրինականութիւնը, այնուամենայնիւ մենք պիտի նկատենք, որ մի քանի մասերում աշխատութիւնը կարելի էր աւելի յաջողակ կատարել։ Ինչպէս երևում է, հեղինակին յայտնի չեն նորա առարկային վերաբերեալ քանի մի նշանաւոր երկեր, որ ակադեմիկոս Ն. Մառի, ուսուցչապետ Գ. Խալաթեանցի հետազօտութիւնները, Fr. Tournebize-ի Histoire politique et religieuse de l'Arménie և այլն, Ուստի նորա Հայաստանի հնագոյն պատմութիւնը չափազանց վայրիվերոյ է և ոչ միշտ համաձայն է գիտութեան նորագոյն տուեալներին։ Յատկապէս գրքի նիւթը, պատմութիւնը I. դարի նախ քան Քս. աւանդուած է աւելի ուշադրութեամբ և առհասարակ համապատասխանում է արդի գիտութեան, թէև հեղինակը շատ է հաւատում Մ. Doeens-ի և A. Katch գրքին, որ կարօտ է սրբագրութեան։ Նորա միւս հիմնական ձեռնարկն է Տ. Ռէյնակի Միհրդատի մասին գրուած փայլուն՝ բայց միակողմանի գիրքը։ Մի շարք այլ աղբիւրներ յիշելուց յետոյ՝ Վ. Բրիւսովը շարունակում է՝ Գրքի մանրաւոր տեղերը նոյնպէս կասկած են յարուցանում. հազիւ թէ Հայաստանի սահմանները տարածւում էին մինչև Եգիպտոս (Մեծն Տիգրանի օրերում). Տիգրանակերտի տեղի մասին կարևոր տեղեկութիւններ կարող էր տալ Lehmann-Kanpt-ի գրուածքը. ճիշտ չէ թէ Մեծն Տիգրանից առաջ դրամներ չեն մնացել Հայոց թագաւորներից»։

Ակնարկելով գրքի ուրիշ թերութիւնների վրայ, Վ. Բրիւսովը չէ ուրանում Ա. Ամֆիթէատրովի բազմակողմանի, փայլուն տաղանդը։ Շատ էջեր գրուած են աշխոյժ և լուրջ կերպով և ընթերցողի առաջ բացւում են նոր տեսակ աշխարհ։ Մովսէս Խորենացու, իբրև պատմաբանի, քննադատութիւնը խիստ է և կենդանի, թէև հեղինակը գրքում գնահատում է նորան ըստ արժանւոյն, իբրև ազգային վէպի յօրինողին*)։ Բնորոշումներից մանաւանդ յաջող է Լուկուլլոսինը, որին հեղինակը պաշտպանում է պատմութեան սովորական մեղադրանքների դէմ։ Շատ գնահատելի են առանձին փոքր նկատողութիւնները, որոնք գնում են քանի մի երկրորդական խնդիրներ և որոնց մէջ երևում են մեծ գիտութիւն, աշխատանք և սրամտութիւն. որոնցից մի քանիսին չէ կարելի չըձայնակցել, թէև հակառակ են ընդունուած կարծիքներին։ Վերջապէս Հայաստանի պատմութիւնը ինքն ըստ ինքեան այնքան նշանաւոր է, այնքան հետաքրքրական, որ մեծագոյն ուշադրութեան արժանի է փորձը—ծանօթացնելու այդ ընթերցողների լայն շրջաններին։

Գիրքը կարդացւում է իբրև մի վիպասանութիւն՝ (романъ) և ընդ սմին մատակարարում է ռուս ընթերցողներին բազմաթիւ գիտական տեղեկութիւններ, որոնք մինչև այժմ յայտնի չէին։ Մեր վերջնական եզրակացութիւնն է. «Ա. Ամֆիթէատրովի գիրքը հետաքրքրական է և լուրջ և կարդալ պէտք է»։

Գ. Բրիւսովի մատենախօսութիւնը մենք, համարեա, ամբողջութեամբ թարգմանեցինք ցոյց տալու և վկայելու մեր այն անհուն համակրութիւնը և անկեղծ յարգանքը, որ երկու ռուս նշանաւոր մատենագիր՝ Ա. Ամֆիթէատրովը և Բրիւսովը մտածում են դէպի հին Հայաստանը, Հայերը, նրանց մշակոյթը (կուլտուրան), պատմութիւնը, գրականութիւնը և այժմեան վիճակը։ Եթէ այս երկուսին համեմատելու լինենք մեր մայրենի լեզուից բոբիկ և օտարախօս մտաւորականների հետ, բանից դուրս կը գայ, որ յիշեալ ռուս հեղինակները, աւելի — plus royale que le roi même են, քան բուն այդ մտաւորականները։ **)

Մ. Շովրեան

(Վերջ)

Յ. Գ. Գ. պ. Ամֆիթէատրովին և Բրիւսովին, իբրև մի սոսկ հայ, հրապարակօրէն արտայայտում եմ իմ խորին և անկեղծ յարգանքս։

Մ. Շ.

*) Տես «Համբաւաբեր» № 36։

*) Մ. Խորենացին ազգային վէպի յօրինող (՞՞)։ Ա՛յս ինչ նորութիւն է։ Խմբագր.

**) Արքայի շահերի աւելի պաշտպան քան ինքն արքան։ Խմբագր.

# Մամուլ

«Հորիզոն»ի № 198-ի խմբագրականում կարդում ենք.

«Մօտ երկու տարուայ փորձը մեզ բերել է այն համոզման, որ մեր Նպաստաբաշխ մարմինները երբէք չեն կարողանալու Հայաստանի վերածնութեան գործը վայելուչ բարձրութեան վրայ դնել, մինչև որ նրանք չը վերակազմուեն այնպէս, որ այդ գործի ղեկավարութիւնը փաստօրէն անցնի տաճկահայերի ձեռքը։ Այն խնամակալութիւնը, որ նրանք հաստատել են տաճկահայերի վրայ, աւելի քան անտեղի է, եթէ չասենք վնասակար։

«Տաճկահայերը ոչ կազմակերպչական ընդունակութեամբ են յետ մնում ռուսահայերից, ոչ իրենց երկրի կարիքների ծանօթութեամբ և ոչ էլ գործի սրտացաւութեամբ։ Նման հանգամանքներում հին գործելակերպի մէջ յամառելը պէտք է նկատուի իբրև որոշ անձնաւորութեանց և մարմինների փառասիրութեան արդիւնք և ըստ արժանւոյն խարանուի։

«Սակայն մենք համոզուած ենք, որ այս խարանումները իրենց նպատակին չեն հասնելու, մինչև որ տաճկահայ մտաւորականութիւնը կազմակերպուած ձևով իր ձայնը չը բարձրացնի»։

Մենք կարծում ենք, Տաճկահայերը երբէք էլ կարօտ չեն եղել Ռուսահայերի խնամակալութեան, որ դժբախտաբար շատ աւելի վաղ է սկսուած, քան յայտնում է այժմ «Հորիզոն»ը։

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Արգոյ Պ. Խմբագիր

«Համբաւաբերի» № 34-ում, իմ մատենախօսութեան էջերում, ես աւանդել եմ պ. Ամֆիթէատրովի կարծիքը Մ. Խորենացու մասին, որին նա մեղադրում է խաբէութեան համար։ Այդ մեղադրանքը նոր չէ և ռուս բանասէրը միայն կրկնում է մեր պատմահօր քննադատների խօսքերը*)։ Իսկ գալով ինձ, Ձեզ յայտնի պիտի լինի իմ կարծիքը՝ իմ աշխատասիրած փոքրիկ գրքոյկից «Краткій Очеркъ Армянской Литературы V вѣка. էջ 13—16. Москва 1914. Ուստի խմբագրութեան երկու ծանօթութիւններն էլ հարկ է ուղղել պ. Ամֆիթէատրովի հասցէին, այլ ոչ ինձ։ Թիւրիմացութեան տեղիք է տուել խմբագրութեանդ այն հանգամանքը, որ ես, մէջ բերելով ռուս հեղինակի կարծիքը, չեմ ամփոփել այն չակերտների մէջ։ Այստեղ, արդարև, մեղքը իմն է. повинную голову мечъ не сѣчетъ—ասում է ռուսաց առածը։ Սակայն խմբագրութեանդ երկու ծանօթութիւններն էլ ի դէպ են և յարմար և ապացուցանում են, որ Համբաւաբերի խմբագրութեան կազմի մէջ կան լուրջ բանասէրներ, որոնց քաջ յայտնի է Մ. Խորենացու շուրջը ծագած քննադատական գրականութիւնը, ուրեմն Համբաւաբերը մեծ խնամքով է խմբագրւում, որ շատ մխիթարական երևոյթ է. մի հանգամանք, որ ոչ միշտ կարելի է հանդիպել մեր պարբերական հրատարակութեանց մէջ։ Բազմաթիւ օրինակներից բերեմ մէկն, որ միտս ընկաւ այս վայրկեանին։ Ռուս հրապարակախօս պ. Очановскій, իւր մի յօդուածում խօսելով Ջուարթնոց եկեղեցու աւերակների մասին, ի միջի այլոց, գրում էր, թէ յիշեալ եկեղեցին շինել է Հայոց Ներսէս (?) թագաւորը։

Յօդուածը թարգմանութեամբ լոյս տեսաւ Թիֆլիսի յայտնի մեր լրագրերից մէկում, նոյն սխալի կրկնութեամբ. և լրագրի խմբագրութիւնը ուրոյն ծանօթութեան մէջ չնկատեց իւր կողմից «թէ Ներսէս անունով թագաւոր չունի մեր պատմութիւնը և թէ Զուարթնոցի եկեղեցին շինել է, ըստ Սեբէոսի, Ներսէս Գ. Շինող կաթողիկոսը. guod licet bovi, non licet Iovi, կասենք մենք, շրջելով լատինական առածը։

Մ. Շավրեան

*) Ուրախ լինելով միանգամայն որ Խորենացու մասին յայտնած յախուռն խօսքերը մեր յարգելի աշխատակցինը չեն, պէտք է յաւելնք, որ Ամֆիթէատրովը չի արդարանում բնաւ, որ կրկնում է իւր նախորդների քննադատական սխալները։ Այս արդէն ստուեր է գցում Ամֆիթէատրովի աշխատութեան արժէքի վրայ։ Մ. Խորենացին մի սֆինքս է, ինչպէս ասել է հայագէտ ուսուցչապետ Ն. Մառը և սֆինքս էլ, երևի, կը մնայ ընդերկար, մինչև որ մի նոր Եդիպոս դուրս կը գայ մեզ ցարդ գաղտնի մնացած առեղծուածը լուծելու։

Խմբագր.

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ



## ՄԻ ԲԱԺԱԿ ԹԷՅ

## „Чашка чаю"

Տիկին Շուշանիկ Օգանէզեանը խնդրում է «Մի բաժակ թէյ»-ի հերթապահ յարգելի տիկիններին և օրիորդներին մասնակցելու խորհրդակցութեան, որ տեղի է ունենալու «Մի բաժակ թէյ»-ի շինութեան մէջ ամսիս 13-ին, երեքշաբթի առաւօտեան ճիշտ ժամի 12-ին։

Հայկակ. Կենտրոնական Կոմիտէի բոլոր մասնաճիւղերում վաճառւում է

ՂԱԶԱՐՈՍ ԱՂԱՅԵԱՆԻ

## ԵՐԿՈՒ ՔՈՅՐ

(ԵՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ)

Գինն է 1 ռուբլի։ Այս գրքի վաճառումից գոյացած գումարի 30% հրատարակիչը դնում է Հայկ. Կենտ. Կոմ. տրամադրութեան տակ։

5—4

## ԴԻԼԻՋԱՆԻ

որբանոցների համար հարկաւոր է ՈՒՍՈՒՑԻՉ-գիւղատընտես։ Ցանկացողները պէտք է դիմեն՝ Թիֆլիս, Բարեգ. Ընկ. գրասենեակ.

Абасъ-Абадская площадъ, д. № 7. կամ Դիլիջան պ. Տիգրան Ասլանեանի։

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ԱՐՀԵՍՏԱՆՈՑՈՒՄ

Գանովսկայա փող. № 3. ծախւում են երեխաների շորեր մատչելի գներով, սրբիչներ, ծրարներ, փոստի թուղթ և այլն։ Ընդունում են պատուէրներ աթոռների վերանորոգութեան։

Վաճառւում է Գ. ԷԴԻԼԵԱՆԻ

## ԴԱՍԱԻԱՆԴՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

գիրքը, գինը 65 կոպ.

Բովանդակութիւն. պատմողական և հարցողական դասաւանդում, հարց, պատասխան, դասի նիւթի մշակումը (դասի նպատակը, նիւթի ստորաբաժանումը, բացատրութիւն), վարժութիւն, դպրոց. պիտոյքներ, դիդակտիկական կանոններ, ուսուցչի անձնաւորութիւնը։ 12 մշակուած դաս կրօնի, բնագիտութեան, աշխարհագրութեան, թուաբանութեան և հայոց լեզուի։

3—3

Կ. Հ. Բ. Ընկ. նպաստող դպրոցների համար հարկաւոր են ուսուցիչ-ուսուցչուհիներ։ Ցանկացողները պէտք է շուտով դիմեն Ընկ. գրասենեակ՝ Աբասաբադեան հրապ. № 7, ուր կարող են տեղեկանալ տեղի և պայմանների մասին։

4—4

## ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Հարկաւոր են Ուսուցիչներ և Ուսուցչուհիներ. ցանկացողները պէտք է դիմեն Հ. Կ. Կոմիտէին, Тифлисъ, Абас-Абадская пл. № 7

3—2

## ԴԻԼԻՋԱՆԻ ՈՐԲԱՆՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Հարկաւոր են երկու կառավարիչ, չորս օգնական, Աւագ-ուսուցիչ և ուսուցչուհիներ (մէկը կամ երկուսը ռուսագէտ)

Պայմանների մասին դիմել Կ. Հ. Բ. Ընկ. Գրասենեակ. Тифлисъ, Абас-Абадская пл. № 7

3—2

Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած

## կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի

արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և գիւանական գրքեր։ Դիմել Գանովսկայա փող. տ. Մանթաշեանի։

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Փօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.